

## Հայաստան

Ես սիրում եմ
Քո աղբյուրները,
Սառնորակ աղբյուրներդ,
Իմ Հայաստան:

Ես սիրում եմ
Քո լեռները,
Քարքարոտ լեռներդ,
Իմ Հայաստան:

Ես սիրում եմ
Բույրը ծառ ու ծաղկիդ,
Իմ Հայաստան:

ԼԵՎՈՆ ՀԱԿՈԲՅԱՆ
Դամալայի միջն. դպրոցի 6-րդ դաս.

## Գարուն է եկել

Գարուն է եկել,
Այ ծիտիկ, զարթնի,
Զարթնի ու լուր տար
Բոլոր-բոլորին:

Գարուն է եկել,
Եկել ու իր հետ
Երգ, խինդ է բերել,
Զարթնեցեք, հեյ-հե՜յ:

Գարուն է եկել...
Դու, սոխակ, զարթնի,
Զարթնի, երգ հյուսի,
Զարթնի, հե՜յ, զարթնի...

ՆԱԻՐԱ ՍԻՄՈՆՅԱՆ
Բոգդանովկայի շրջան,
Հեշտիայի դպրոց

«Հունձ»

«Դիմանկար»

ԳԻԺԼԱՐՅԱՆ ԿԱՐԻՆԵ
Շամշադինի շրջ., գյուղ.
Վ. Կարմրաղբյուր, 12 տ.



# Լսեցեք

Է հե՜յ, լսեցեք, աշխարհի մարդիկ,
Լսեք լռությամբ, դատեք խորությամբ.
Այդ ո՞ր օրենքով և իրավունքով
Մարդ են սպանում, քաղաք ավերում,
Գրկից մայրական երեխա խլում
Ու հենց նոր սարքած բազմահարկ շենքը
Քարուքանդ անում ու հող են դարձնում:
Ասացեք խնդրեմ, որտե՞ղ է գրված օրենքն
այդ դաժան,
Եվ ո՞րն է լավը.
Մարդ սպանելն ու քաղաք քանդե՞լը,
Թե՞ խաղաղ սերն ու վերաշինելը:

ՎԱՐԻՆ ՍԱՐԳՍՅԱՆ
Արարատի շրջ., Շահումյան գյուղի
միջն. դպրոցի 10-րդ դասարան



# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

№ 10 ● 1984

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1923 ԹՎԱԿԱՆԻՑ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ . . . . 1
Ուսուցչի ամբիոն . . . 2
Մ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Բանաստեղծություններ . . 3
Ն. ԳՐԻԳՈՐՅԱՆ
Առաջին շաբաթը առաջին դասարանում . . . 4
Հ. ԽԱՉԱՏՐՅԱՆ
Բառը չզորացրվող զինվոր է . 6
Ե. ՊԵՏՐՈՍՅԱՆ
Բանաստեղծություններ . . 9
Ֆ. ՇԱՔԱՐՅԱՆ
Ծլնգանի ձորում . . . . 10
Լ. ԲՈՅԱՄՅԱՆ
Առաջին տխրությունը . . 13
Հ. ՀՈՎՆԱԹԱՆ
Բանաստեղծություններ . . 14
Ս. ԴԱՎԻԹԱՎՅԱՆ
Բանաստեղծություններ . . 15
ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՎՋԿԱՊԻ ԵՎ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿՐԾՔԱՆՇԱՆԻ ՄԱՍԻՆ . . 17
Ռ. ՇԱՌՈՅԱՆ
Աղավնիները . . . . 18
Է. ՍԱՐԳՍՅԱՆ
Արփայի հովտում . . 20
ԱՆՀԱՍԿԱՆԱԼԻ ՀԱՍԿԱՆԱԼԻՆ . . . . 22
Գ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
Բանաստեղծություններ . . 23
Ա. ԱԲԱՋՅԱՆ
Հոնին . . . . . 24
Կ. ԳԵՎՈՐԳՅԱՆ
Ի՞նչ են պատմում ժայռապատկերները . . 26
Չ. ԱՄԻՐԷՋԻԲԻ
Բամբասասեր կաչաղակը . . . . . 28
Ն. ՄԻՆԱՍՅԱՆ
Հաղարծին . . 30
ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ . . 31
Կ. ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ
Բանաստեղծություններ . . . 32
ԺԱՄԱՆՑ

Շապիկը՝ ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

# Ո՞Ր ԴԱՍԱՐԱՆՈՒՄ ԵՄ ՀԱՃՈՒՅՔՈՎ ՊԱՐԱՊՈՒՄ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

**Պատմում է Օլգա Միխայլովնա Տիխոնովան: Նա 35 տարի դպրոցում աշխարհագրություն է դասավանդում և գերազանց աշխատանքի համար պարգևատրվել է «Աշխատանքային արիության համար» մեդալով:**

Երեխաներն իրենց ուսուցիչների մասին ասում են. «Սա մերոնքական է, բարի է», «Նրա դասերին կլանված լսում ես» կամ «Չեմ սիրում այդ ուսուցչին, նրա դասերը ձանձրալի են...» Սակայն մենք՝ ուսուցիչներս, նույնպես տարբեր ենք արտահայտվում մեր դասարանների մասին և մենք էլ կարող ենք նրանց մասին ասել. «Համերաշխ դասարան է», «Լավ դասարան է, հաճելի է աշխատել այստեղ», «Ձանձրալի, քնած դասարան է, նրանց ոչինչ չի հետաքրքրում»:

Ո՞ր դասարանում է ուսուցիչը հաճույքով պարապում:

Ամենից առաջ ստեղծագործական, ակտիվ դասարանում: Ստեղծագործական դասարանը անտարբերությամբ չի սովորում այն, ինչ պատմել է ուսուցիչը կամ ինչ-որ գրված է դասագրքում: Այդպիսի դասարանը ավելին է ցանկանում, քան միայն հիշելը, ուզում է հասկանալ, սովորել մտածել: Ստեղծագործական դասարանը չի վախենում այն հարցերից, որոնց պատասխանը չգիտի, այն խնդիրներից, որոնք չի կարող լուծել: Նա առաջարկում է իրենը, ինքն է փնտրում լուծումը: Երբ դասարանը դասի ժամանակ ստեղծագործում է, մտածում է, ես սխալ պատասխանների համար վատ գնահատականներ չեմ դնում, երբեք չեմ ծիծաղում նույնիսկ ամենաանհեթեթ ենթադրությունների վրա:

Ուսուցչի համար նաև հեշտ և հաճելի է դաս անցկացնել համերաշխ դասարանում: Անհամերաշխ դասարանում բոլորը մրցում են, յուրաքանչյուրն ուզում է մյուսներից խելոք երևալ: Այդպիսի դասարանում երեխաները չարախնդորեն ծիծաղում են, երբ համադասարանցին անհաջող է պատասխանում դասը: Նրանք սիրում են վեճեր, սիրում են ուսուցչին դժվար հարցեր տալ. «Տեսնենք, ինչպե՞ս տակից դուրս կգա»: Համերաշխ դասարանում երեխաները շատ են կարդում: Եթե համադասարանցիները հետաքրքիր են պատասխանում դասերը, իրենք էլ են ոգևորվում, անհարմար են զգում մյուսների առջև: Ստեղծագործական մթնոլորտը համերաշխ դասարանում վարակում է բոլորին:

Ես վեցերորդ և ութերորդ դասարանները մտնում էի հաճույքով: Բայց ահա այս տարի աշխարհագրություն սկսեցի դասավանդել նաև յոթերորդ դասարանում: Բայց ոչ մի հետաքրքիր դաս այդ դասարանում չեմ կարող մտաբերել: Ինձ

բաժին ընկած յոթերորդ դասարանը ծույլ էր, քնած: Նրանք ոգևորվում էին միայն դիաֆիլմեր ցուցադրելու ժամանակ:

Չափազանց շատ էին այդ դասարանում այն երեխաները, ովքեր նստում էին նստարանին նստած, սպասում էին զանգին, ոչ ոքի չէին խանգարում, բայց և ոչինչ էլ չէին լսում:

Կամ էլ թաքցնում էին դեմքերը, որպեսզի չմասնակցեն ընդհանուր զրույցին: Դասը նրանց համար անհետաքրքիր էր: Ես նույնպես ձանձրանում էի նրանց հետ: Տեսնու՞մ եք, ինչ է ստացվում՝ վեցերորդ և ութերորդ դասարանցիների համար ես լավ ուսուցիչ եմ, իմ դասերը հետաքրքիր և ուրախ են անցնում, իսկ յոթերորդ դասարանցիների համար վատն եմ: Ուրեմն, որպեսզի դասը հետաքրքիր անցնի, կախված է ոչ միայն ուսուցիչներից, այլև ձեզնից, երեխանե՛ր: Իսկ յոթերորդ դասարանում բոլոր ուսուցիչներն էլ ձանձրանում էին, որովհետև այդ աշակերտները ծույլ, անտարբեր և անհետաքրքիր էին:

Վաղը ես դաս ունեմ իմ սիրելի դասարանում, իսկ այսօր երեկոյան ես մտածում եմ, թե ինչպես եմ այն անցկացնելու: Ես կբացատրեմ նոր նյութը, կառաջադրեմ ստուգողական հարցեր, որպեսզի համոզվեմ, որ բոլորը հասկացել են նոր դասը: Հետո ես կհարցնեմ «թույլերին»:

Մենք կզրուցենք և՛ նոր թեմայի մասին, և՛ թե ինչ էր հանձնարարված տանը սովորելու, ի՞նչ են նրանք լրացուցիչ կարդացել: Զրույցը նրանց վստահություն կըներշնչի:

Իսկ դասի վերջում երեխաներին հաճելի անակնկալ է սպասվում. մենք կխաղանք: Վեցերորդ դասարանը կբաժանվի երկու խմբի: Յուրաքանչյուր խմբից մեկ աշակերտ կգնա գրատախտակի մոտ: Առաջին խումբը հարցեր կառաջարկի երկրորդ խմբի ներկայացուցչին:

«Ո՞րն է ամենածանծաղ ծովը», «Իսկ ամենախորը ո՞րն է», «Ո՞ր ծովում էին վերջերս կետեր հայտնվել», «Իսկ ո՞ր ծովում էր նավ խորտակվել»: Բոլոր պատասխանները հարկավոր է ցույց տալ քարտեզի վրա: Հետո դերերը կփոխվեն: Երկրորդ խումբը հարցեր կտա առաջին խմբի ներկայացուցչին: Պատասխանները գնահատում են իրենք՝ երեխաները:

Իսկ յոթերորդ դասարանո՞ւմ: Ինչպե՞ս կանցնի դասը վաղը այնտեղ: Ես ամեն անգամ հույսով մտնում եմ նրանց մոտ. գուցե այսօր արթնանա՞ն:



## ՄԱՐՈՒՍՅԱ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

**Մարուսյա Մարտիրոսյանը, որի բանաստեղծությունները ստորև տպագրում ենք, աշխարհագրություն է դասավանդում Կիրովականի № 2 դպրոցում:**

*

Քանի աշուն է եկել ու անցել,
Կսահի և այս աշունն էլ նորից,
Ճերմակ կհագնեն դաշտ,
　　　　　　　　　կածան ու լեռ՝
Սպասելով ջերմ գարնան շառաչին:
Կբացվի այգը ծաղկաշատ գարնան,
Որպես նոր կյանքի շունչ ու ավետիս,
Անհոգ ու անբիծ հայացքով մանկան,
Իրար կժպտան կակաչ ու նարգիզ:
Նորից քրքիջով ուրախ ու զվարթ
Առուն կփախչի կանաչի միջով,
Մոտակա ձորը կլցվի արծաթ
Հովվական քնքուշ սրնգի կանչով:

*

Խարույկն աշնանն է գեղեցիկ լինում,
Երբ տերևների հոգնած գույները
Հանգչում են խաղաղ կրակների մեջ,
Երբ ծառ ու ծաղկի մշուշը դեղին
Ձուլվում է վառվող կրակի շնչին...
Եվ աչք է շոյում ծուխը թափանցիկ.
Աշնան գույներով բոցն է հմայում,
Եվ բոլորից շատ վառվող կրակին
Այգեպաններն են կարոտով նայում:

*

... Եվ մոլորել է արևն իր ճամփան.
Ծաղկաթերթերում ապրող ցողի մեջ
Ինքն իրեն տեսել ու մոլորել է...
Հովը՝ քնել է փչակում ծառի,
Եվ պղինձ ժայռի շուրթերը մեկ-մեկ
Վառել է արևն իր տաք կրակով...
Կեսօրվա հալոցք-կրակների մեջ
Ջուրը հազիվ է իր շունչը պահում,
Ծաղկի մեջ մեռնող փոքրիկ կաթիլը
Միշտ արեգակի աչքին է նայում:

ՆՈՒՆԵ ԳՐԻԳՈՐՅԱՆ

# Առաջին շաբաթը առաջին դասարանում



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Զանգը հնչեց, առաջին դասարանցիները նստեցին իրենց տեղերում ու սպասողական, սլվլուն հայացքները հառեցին ուսուցչուհուն: Մեկ էլ Հարութիկը վերցրեց պայուսակն ու գնաց դեպի դուռը:

— Հարութիկ, ո՞ւր ես գնում,— հարցրեց ուսուցչուհին:

— Մայրիկս գալիս է,— պատուհանից ցույց տալով, ասաց Հարութիկը,— տուն

եմ գնում:

— Մայրիկիդ ասա, թող գա ինձ մոտ, լա՞վ,— ասաց ուսուցչուհին, ու տղան ուրախ-ուրախ թափահարելով պայուսակը, դուրս գնաց դասարանից:

Քիչ հետո Հարութիկի մայրիկը բացեց դասարանի դուռը: Բայց երբ տեսավ դասարանում նստած աշակերտներին ու սեղանի մոտ կանգնած ուսուցչուհուն, Հարութիկին ներս բերեց և ներողություն խնդրելով ուսուցչուհուց, ասաց.

— Թույլ տվեք նստի դասի,— այպ դիմեց տղային.— Հարութիկ, գնա նստիր տեղդ, ախր ձեր դասերը դեռ չեն վերջացել:

Տղան անվրդով թափահարելով պայուսակը, գնաց նստեց իր տեղը:

● Դասը ընթացքի մեջ էր: Ուսուցչուհին հարցեր էր տալիս, երեխաները պատասխանում էին:

Մեկ էլ ուսուցչուհին նկատեց, որ Համիկը՝ դասարանի ամենափոքրիկ աղջիկը, չի մասնակցում դասին, կռացած ինչ-որ բան է անում:

Ուսուցչուհին մոտեցավ աղջկան:

Համիկը իր ծակետի մեջ բարուրել էր դասագիրքը և... օրորում էր:

— Տիկնի՞կդ է,— հարցրեց ուսուցչուհին:

—Այո,— ժպտաց Համիկը և շարունակեց օրորել «տիկնիկին»:

● Թաթուսն ու Թաթուլը եղբայրներ են: Թաթուսը մեկ տարով փոքր է եղբորից, բայց երկուսն էլ սովորում են առաջին դասարանում:

Թաթուլը մանկապարտեզ է հաճախել, իսկ Թաթոսը՝ ոչ: Եվ երևի դա է պատճառը, որ Թաթուսը չգիտի, թե դասարանում դասի ժամանակ ինչպես պետք է պահի իրեն:

Նա իր նստարանը թողել, գնացել նստել էր եղբոր կողքին: Իսկ եղբայրը նստարանի իր ընկերն ուներ:

— Երեխաներ, երեքով մի նստեք,— ասաց ուսուցչուհին: Եվ տեսնելով, որ ոչ ոք տեղից չշարժվեց, դիմեց Թաթոսին.

— Թաթոս, նստիր կողքի նստարանին, քո տեղն այնտեղ է:

Թաթոսը նեղացած ուռեցրեց շրթունքները և խեթ-խեթ նայելով ուսուցչուհուն, ասաց.

— Չեմ նստի, ես այստեղ եմ ուզում... Հայրիկիս կասեմ, հա՞...

● Համիկը սև-սև աչուկներ ունի: Եվ դասի ընթացքում իր աչուկները ուսուցչուհուն հառած, ակտիվ մասնակցում էր դասին:

Եվ քանի որ նա ջանասիրությամբ կրկնում էր ուսուցչուհու ասած բոլոր բառերն ու արտահայտությունները, ուսուցչուհին նրան կանչեց գրատախտակի մոտ:

— Չեմ ուզում,— ասաց Համիկը և մնաց նստած:

— Ինչպե՞ս թե չես ուզում,— շփոթվեց ուսուցչուհին: Ես պետք է քեզ դաս հարցնեմ:

— Չեմ ուզում:

Ուսուցչուհին ուրիշի կանչեց դաս պատասխանելու:

Դասերից հետո մոտեցավ Համիկի մոր ը և ասաց.

— Այսօր Համիկին կանչեցի գրատախտակի մոտ, նա հրաժարվեց:

— Համիկը շատ կամակոր է,— ասաց մայրիկը:— Կոտրեք նրա կամակորությունը, թույլ մի տվեք, որ իր խոսքը առաջ տանի:

Հաջորդ օրը ուսուցչուհին նորից Համիկին կանչեց դաս պատասխանելու:

— Չեմ ուզում գալ,— նորից համառեց աղջիկը:

— Ոչ, այսօր դու անպայման պետք է գաս:

— Չեմ ուզում գալ,— Համիկը անդրդվելի էր:

— Համիկ, անմիջապես արի գրատախտակի մոտ,— արդեն խիստ տոնով պընդեց ուսուցչուհին:

Համիկը սկսեց հեկեկալ: Նրա սևուկ աչուկներից արցունքի խոշոր կաթիլներ թափվեցին:

Այս անգամ էլ Համիկը հաղթեց:

Ուսուցչուհին ստիպված մեկ ուրիշին կանչեց դաս պատասխանելու:

● — Իսկ հիմա բացեք նկարչական տետրերը և նկարեք այն բոլոր առարկաները, որոնք դուք այսօր գրքից սովորեցիք,— ասաց ուսուցչուհին:

Երեխաները ուրախացան ու աշխուժացան: Դե ո՞ր երեխան չի սիրում նկարել:

Եվ հանկարծ Հարութիկը վերցրեց իր պայուսակը և նրա ամբողջ պարունակությունը դատարկեց հատակին:

— Այդ ի՞նչ ես անում, Հարութիկ,— զարմացած հարցրեց ուսուցչուհին:

— Ռետինս եմ հանում,— անմեղ նայելով ուսուցչուհուն, ասաց Հարութիկը:

# ԲԱՌԸ ՔԱՐԱՑՎԱԾ ՁԻԱՎՈՐ Է

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Տեղանունը պատմություն է, հուշարձան, հուշամատյան: Տեղանունից է սկսվում հայրենիքը, մարդու կենսագրությունը: Ծննդավայրի անունը մարդուն հոգեհարազատ է այնպես, ինչպես մոր, հոր, եղբոր, քրոջ ու զավակների անունները: Երևանի Կոնդ թաղամասում ծնված տղայի կամ աղջկա համար թանկ են ոչ միայն Երևանն ու Կոնդը, այլև շրջապատի մյուս տեղանունները՝ Հրազդան գետը, Ծիծեռնակաբերդ բլուրը, Պռոշյան փողոցը և այլն: Որևէ գյուղում ծնվածի համար էլ անմոռաց են դառնում գյուղի անունը, գյուղի մերձակա լեռն ու գետակը:

Հայ անվանի աշխարհագրագետ, պատմաբան ու բանաստեղծ Ղևոնդ Ալիշանը, որ Հայաստանի առանձին նահանգներին նվիրված գիտական աշխատություններ է մեզ թողել, գրել է չափածո մի գործ «Բաժինք Հայոց մեծաց» խորագրով: 742 տողանոց այդ պոեմում, որը 1868-ին տպագրվել է «Բազմավեպ» ամսագրում, նա տալիս է պատմական Հայաստանի աշխարհագրական ամբողջական նկարագիրը ըստ 15 աշխարհների (նահանգների), նշում է բոլոր գավառները, գյուղերի մի մասն իրենց հին ու նոր անվանումներով, տալիս է դրանց ստուգաբանությունները, հիշատակում այդ վայրերում տեղի ունեցած իրադարձությունները: Այդ պոեմը Հայաստանի տեղանունների չափածո բառարան է՝ գրված բանաստեղծական շքեղ լեզվով:

Հայ ժողովուրդը դարերի ընթացքում ստեղծել է աշխարհագրական անուններ կերտելու իր ավանդույթը: Ազգային դիմագիծ ունեն գետերի, լեռների, լճերի, դաշտավայրերի, լեռնանցքների, գավառների, գավառակների, լեռնագագաթների, կիրճերի, աշխարհների, քաղաքների, ավանների ու գյուղերի հայկական անվանումները: Դրանց մեջ առավել երկարակյաց ու դիմացկուն են գետերի, լեռների ու լճերի անունները: Օտար նվաճողներին չի հաջողվել խաթարել դրանց հայկական տեսքը և կոչել Հայկական լեռնաշխարհին խորթ անուններով: Երեք հազար տարեկան են Արածանի, Արաքս (Երասխ), Հրազդան, Մասիս, Արագած, Նեմրութ (մեկը՝ Վանա լճի արևմտյան կողմում, մյուսը՝ Կոմմագենե երկրամասում), Վան, Կապուտան անունները: Գետերն ունեցել են առանձին անվանախմբեր, լճերը՝ առանձին, գավառները՝ առանձին: Մեր նախնիները դրանք ոչ նույնացրել են, ոչ խառնել:

Պահպանելով տեղանվանաստեղծության ազգային սկզբունքները, սովետական իշխանության տարիներին Հայաստանի վարչա-աշխարհագրական քարտեզի վրա կատարվել են բազմաթիվ անհրաժեշտ փոփոխություններ: Օտարամուտ, բռնազբոսիկ և նվաստացուցիչ հարյուրավոր տեղանուններ արդեն գրեթե մոռացվել են՝ տեղի տալով նոր, հնչեղ, գեղեցիկ անունների, որ բխում են մեր կյանքի էությունից, խորհրդանշում նրա մեծ առաջընթացը:

Այժմ Սովետական Հայաստանի նորա-

ստեղծ տեղանուններից մի քանիսը. Զովք, Հողմիկ, Բերքառատ, Լեռնապար, Դիտակ, Արաքսավան, Բազում, Լեռնամերձ, Այգեկ, Ոսկեհատ, Գեղակերտ, Տարոնիկ, Զովասար, Արևածագ, Գետավան, Զարթոնք, Արփենի, Դեղձավան, Արծվաբերդ: Այս հրաշալի տեղանունները, մեր հներից ժառանգած անունների հետ, պատշաճում են այսօրվա Հայաստանի անկրկնելի դիմանկարին:

Ընդունված է ասել, թե Հայկական լեռնաշխարհում կա շուրջ 150 հազար տեղանուն: Բայց եթե դրան գումարենք հանդամասերի, աղբյուրների, անտառների, բլուրների, ձորակների անունները, ապա հայկական տեղանունների թիվը կանցնի մեկ միլիոնից: Մի զարմացեք, չկա ոչ մի հայկական գյուղ, որն իր շրջակայքում առնվազն 50 տեղանուն չունենա: Համարյա 35 տարի է, ինչ ես դուրս եմ եկել իմ ծննդավայր Դահրավ գյուղից, բայց մինչև հիմա էլ հիշում եմ մեր գյուղի տարածքում գտնվող Քշմրորի անտառը, Ծնաքար լեռը, Երկար հանդը, Փայլակ հանդամասը, Քարեն գլուխ դաշտը, Բոց աղբյուրը և այլն: Դրանք իմաստավորված անվանումներ են: Իմ հայրենակիցները գյուղի վերևի մասի թանձր անտառը կոչել են Քշմրոր՝ ասելով, թե իբր այդ անտառում քաջքերը մլուլ են գալիս: Ծնաքար կամ Ծինաքար են կոչել, որովհետև այնտեղից շինության համար քարեր են հատել: Երկար հանդը եռանկյունաձև մի երկար տափարակ է: Գյուղի դիմացի հանդամասը Փայլակ է կոչվել, որովհետև կայծակը հաճախակի էր հայտնվում այդտեղ ու փայլատակում: Քարեն գլուխը մի փոքրիկ բարձրավանդակ է: Շատ դիպուկ են անվանել աղբյուրը, ժայռի ճեղքից ջուրն այնպես է ժայթքում, ասես բոց է արձակում:

Այսպես, յուրաքանչյուր մարդ կարող է մտաբերել իր ծննդավայրի շրջակա շատ տեղանուններ:

Ահա այս բոլոր անունների մեջ պահպանվել է հայերեն բառերի մի հզոր շերտ: Տեղանունը կարելի է համարել միտաղողանջ զանգ, որը և հայերեն բառն է պահում, և հայոց պատմությունը: Տեղանունները հայերեն բառագանձի անփոխարինելի պահոցներ են: Եվ ոչ միայն բառերը: Մեր հնօրյա պատմության ու մշակույթի՝ կորստից փրկված շատ բեկորներ պահպանվել են հայկական տեղանուններում:

Երևանի հյուսիսարևմտյան մասում Հրազդան գետի ձախ ափին Կոնդ թաղամասն է: Կոնդը հին անուն է, թերևս Երևանի չափ տարիք ունենա: Երևանի այդ թաղամասը Կոնդ է կոչվել իր բարձր դիրքի պատճառով: Բայց կարևորն այն է, որ այդ տեղանունը պահել է հնամենի **կոնդ** բառը, որն այսօր գրական հայերենում չի գործածվում: **Կոնդ** հին հայերենում նշանակել է **գլուխ, բլուր:** Այդ բառը գլուխ իմաստով պահպանվել է նաև Ղարաբաղի բարբառում (այժմ էլ ղարաբաղցին, երբ մեկին կշտամբում է, ասում է՝ կոնդդ չի՛ մտնում, այսինքն գլուխդ չի մտնում):

**Վիրապ** հայերեն նշանակում է **խոր փոս, հոր, ցամաք ջրհոր:** Բայց **վիրապ** բառը հիմա չի գործածվում: Մինչդեռ այն պահպանվել է Խորվիրապ անվան մեջ: Եղե՞լ եք Արտաշատի հնավայրում (Արարատի շրջանում): Խորվիրապը հենց այդտեղ է: Հնում դա եղել է արքունի բանտ (հանցանաց խուց), հետո դարձել է ուխտավայր:

**Ոտն** բառը նշանակում է, նաև **ստորոտ, փեշ:** Այդ իմաստը պահպանվել է **Արագածոտն** և **Մասյացոտն** գավառների անունների մեջ:

Երևի դուք ամենևին չեք լսել **մոր** բառի մասին (դա կապ չունի ոչ մայր, ոչ էլ մորի բառերի հետ): Մեր հները **մոր** ասելով հասկացել են ճահիճը, տիղմը, ցեխը: Բառն այդ իմաստը պահել է տեղանուններում: Ով եղել է Արարատյան դաշտում, չէր կարող չտեսնել Մեծամոր գետն ու Մեծամոր ավանը: Եկեք ստուգաբանենք Մեծամորը. **Մեծ+ա+մոր**=մեծ ճահճուտ: Դա պատահական անվանում չէ: Մեր նախնիները առավել նրբանճաշակ են եղել տեղանուններ կոչելիս: Մեծամոր գետը ակունքներում ծածկված է եղեգնուտներով և առաջացնում է ճահճուտներ: Այդ պատճառով էլ մեր պապերն այն անվանել են Մեծամոր:

Արևմտյան Հայաստանում ժամանակին եղել է **Բոլորմոր** անունով մի բնակավայր: Այդպես է կոչվել, որովհետև նրա շուրջը, չորս բոլորքը ճահճուտներ են եղել. Բոլոր (բոլոր կողմը) + մոր (ճահիճ) = չորս կողմը ճահճուտ կամ բոլորեքյան ճահճուտ:

Հայկական ՍՍՀ Արթիկի շրջանում Հառիճ անունով մի գյուղ կա: Ե՛վ գյուղն է հին, և՛ անունը: **Առիճ** կամ **Առինճ** (որից էլ՝ Հառիճ) հին հայերենում նշանակել է գյուղ, բայց որպես բառ առանձին

չի գործածվել, որովհետև այդպես են կոչվել այն գյուղերը, որոնց շուրջը սրբազան կաղնուտներ են եղել, այսինքն այդպես են կոչվել այն բնակավայրերը, ուր տարածված է եղել կաղնի ծառի պաշտամունքը: Հին Հայաստանում հայտնի են եղել այդ անունով բարդված հետևյալ տեղանունները. Բագառիճ կամ Բագահառիճ, Գուկառիճ, Լուսաթառիճ, Խոկառիճ, Չիթառիճ, Մկնառիճ, Տիրառիճ, Արջո առիճ, Խաղտո առիճ, Առինջ (այս մեկն այժմ մտնում է Երևան քաղաքի մեջ) և Հառիճ: Ուսումնասիրությունները պարզել են, որ, առանց բացառության, այս բոլոր բնակավայրերում կաղնուտներ են եղել: Հետո գիտնականները ապացուցեցին, որ **հառիճ** նշանակում է **կաղնի**: Տեսնու՞մ եք, թե մի բառն ինչպես կարող է իր ծալքերում պատմություն պահել: Այսպիսով **հառիճ** նշանակում է և **գյուղ**, և **կաղնի**: Բայց մեր ժամանակներում ապրող ոչ մի հայ **գյուղ** ու **կաղնի** բառերի փոխարեն հառիճ չի ասի: Այդ իմաստները խնամքով պահում է Հառիճ տեղանունը:

Հայկական ՍՍՀ Գորիսի շրջանի Քարահունջ գյուղի անվան կազմության մեջ պահպանվել է **ունջ** բառը, որն ունի հատակ, արմատ, ստորոտ, ոտք իմաստը:

Մի ժամանակ Սյունիքում, և հատկապես Սևանի ավազանի գավառներում տարածված էին **բակ** վերջավորությամբ տեղանուններ (Արավիսաբակ, Խոնթաբակ, Խորասանաբակ, Հոսաբակ, Դպրաբակ, Գեղամաբակ, Տաճարաբակ և այլն): **Բակ** հայերեն նշանակում է շրջապատված **տեղ**, **գավիթ**, **գյուղ**, **ավան** (ի դեպ, գերմաներենում էլ այս բառն ունի նույն իմաստը): Հիշյալ տեղանունների մեջ **բակն** այդ իմաստով էլ գործածված է: Օրինակ, 9-րդ դարում Դպրաբակ է կոչվել դպիրների այն գյուղը, որ գտնվում է այժմյան Վարդենիսի շրջանի Ջող ավանի մոտ:

Սովետական Հայաստանում ունենք մի քանի գյուղեր, որոնք հավերժացնում են ռուս երախտավորների հիշատակը: Դրանք անվանվել են **Լերմոնտով**, Պուշկին, Ֆիոլետով, Կիրով ազգանունների ու մասնիկի պարզագույն հավելումով: Այս մասնիկը հին ռուսերենում և ընդհանրապես հնդեվրոպական լեզուներում, այդ թվում և հայերենում, նշանակում է տուն, բնակավայր, պարսպապատ տեղ: **Ո-ն** իր այդ իմաստը պահպանել է ռուսերեն село բառի մեջ: **Լերմոնտովո** նշանակում է Լերմոնտովի գյուղ կամ Լերմոնտովի անունը կրող գյուղ: Նույն սկզբունքով են կազմված **Օրեխովո-Զուևո** (քաղաք ՌՍՖՍՀ Մոսկվայի մարզում), **Բռնո** (քաղաք Չեխոսլովակիայում) և ուրիշ տեղանուններ: Գրաբարում **օ**, **օնք** կամ **օն** նշանակում է տեղ, բնակավայր: Այդ վերջավորությամբ տեղանուններ տարածված են եղել Տարոնում և Վանա լճի ավազանի ուրիշ գավառներում: Արդխոնք, Արտոնք, Փղոնք, Ցրոնք, Ջորկոնք, Խորոնք և այլն: Նույն վերջածանցով է կազմված Հայկական Կիլիկիայի Լամբրոն տեղանունը: Ուշագրավ է նաև Խծկոնք կամ Խցկոնք տեղանունը (գտնվում է Արևմտյան Հայաստանում), որը, հավանաբար, առաջացել է **խուցակյացներ** բառից:

Մեր հները **խակ խաղողին** ասել են **ազոխ**: Հիմա քչերն են գործածում ազոխ բառը: Բայց ա՜յ, Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի Հադրութի շրջանում պահպանվել է Ազոխ անունով գյուղը: Երաշտի տարիներին այդ գյուղի բնակիչները ստիպված են եղել դեռահաս խաղող ուտել, որի պատճառով գյուղը կոչվել է Ազոխ:

Անցյալում արևակողմ լեռնալանջերը կոչվել են **արեգունի**: Այդ իմաստը պահպանել է Հայկական ՍՍՀ Արեգունի լեռնաշղթան, որ գտնվում է Սևանի ավազանի հյուսիսարևելյան կողմում:

Մենք ավարտեցինք մեր զրուցաշարը լեզվի մասին, որն հավանաբար կօգնի մեր ընթերցողներին հարստացնելու իրենց բառապաշարը, ծանոթանալու մի շարք բառերի կենսագրությանը: Ինչքան շատ բառ հիշեք, այնքան հարուստ կլինի ձեր լեզուն: Պետք է ոչ միայն շատ բառեր հիշել, այլև կարողանալ ճիշտ ու տեղին օգտագործել դրանք:

Արագ և շատ օտար լեզուների կարող է տիրապետել նա, ով հրաշալի գիտի մայրենին: Կիրթ մարդ կարելի է համարել առաջին հերթին նրան, ով լավ գիտե իր մայրենին: Շատ օտար լեզուներ իմանալը արծաթի անբավ հարստություն է, ոսկի է միայն մայրենին իմանալը:

Մի անգամ սովետական անվանի լեզվաբան, Էստոնական ՍՍՀ ԳԱ ակադեմիկոս Պաուլ Արիստեին, որ գիտե շուրջ 40 լեզու, հարցրին.

— Ձեր կարծիքով ո՞ր լեզուն է ամենագեղեցիկը:

— Միշտ մայրենին,— պատասխանեց Արիստեն:

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՕՐՈՐ

Քնիր, փոքրիկ, քնիր, իմ լավ,
Որ գիշերը անցնի,
Որ աշխարհի ու քեզ վրա
Նոր առավոտ բացվի:

Որ ձյուն-ձմեռ քիչ-քիչ հալվեն
Մեր շուրջ, սար ու ձորում,
Ծիլ ու ծաղիկ հողից ելնեն,
Լինի պայծառ գարուն:

Քնիր, օրոր, էլ ի՞նչ ասեմ,
Հույս ու հավատ տղաս,
Ողջ աշխարհը ես կհսկեմ,
Որ դու քնես խաղաղ:

## ՍՓՈՓԱՆՔ

Ընկել էր ծառը,
Նոր էր ընկել,
Տնքում էր տխուր
Ու անընկեր:

Մեկ էլ՝ մի մրջյուն
Ելավ վրան
Եվ դա սփոփեց,
Հուզեց նրան:

— Ամենից վատ է,—
Ասաց,— մրջյուն,
Երբ շուրջդ չկա
Ծունչ ու շրշյուն:

Նկ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ

# ԾՂՆԳԱՆԻ ՁՈՐՈՒՄ

Հին սայլի ճաղերին նստոտած ականջ էինք դնում Գառնիկին, որ թաղի երեխաների շրջանում հռչակված հեքիաթասաց էր: Օրը մթնել էր, և շրջապատն աղոտ լուսավորում էր Գեղամ պապի տան բակի բարձր սյան էլեկտրալամպը:

Գեղամ պապն անաղմուկ կանգնել էր մեր գլխավերևր և վառել չիբուխը: Դա նշան էր, որ մեզ մոտ երկար է նստելու: Քիչ հետո մեր նեղլիկ փողոցով անցավ սայլապան Փասին: Նա բարևեց միայն պապին ու անփույթ նետեց.

— Գեղամ, երանի ես էլ քեզ պես կարողանամ երեխեքի հետ գլուխ դնել:

— Լավ բան չէ՞:

— Մեծ ու սիրուն բան է... — չհասկացանք կատա՞կ էր, թե՞ լուրջ:

— Դու էլ կարող ես,— ասաց պապը:

Փասին ծիծաղեց.

— Լուսաբացից մինչև իրիկուն գործի մեջ թաղված եմ, այ ընկեր, գործս կընմնա, գո՛րծս,— և հոգնած մարդու կեցվածք ընդունելով, հեռացավ:

Գեղամ պապը ծիծաղեց նրա ետևից: Իսկ Գառնիկը, որ ընդհատել էր պատմությունը, դժվարանում էր շարունակել, և պապն օգնեց նրան.

— Ուշ է, տուն գնացեք... երեխեք ջան,— և հետո խնդրեց,— էգուց մեղվանոց եկեք. խոտը հնձել եմ, չորացել է, հավաքելու է մնացել:

Միաբերան խոստացանք:

Առավոտյան վաղ մեկիկ-մեկիկ մեր այգու դռնակի մոտ հավաքվեցինք բոլոր վեց ընկերներով, բոլորս էլ եղան ու փոցխ առած: Ուտելու անուշ-անուշ բաներ էլ վերցրած, ճանապարհ ընկանք, երբ նոր-նոր լուսանում էր: Իսկ Գեղամ պապը դեռ մթնով բարձրացել էր մեղվանոց:

Գյուղի ծայրին հանդիպեց սայլապան Փասին ու կատակեց.

— Լավ է, որ ձեզ հետ հաց-մաց եք տանում, թե չէ Գեղամը ժլատ է, ձեզ էնտեղ սոված կթողնի:

Եվ ահարկու բարկանալով եզների վրա, սայլը տարավ հանդամիջյան ուղիղ ճանապարհով, իսկ մենք շարունակեցինք բարձրանալ Ծենգո սարն ի վեր:

Գեղամ պապը տեսնելով մեզ, անչափ ուրախացավ: Մինչև մեր գալը ինքն էլ անգործ չէր նստել՝ հացի կտորներին բոլբոլ մեղր էր քսել ու ծածկել մի ամանի մեջ, որ մեղուները չհավաքվեն: Մեղրոտ հացերը կերանք խոտհարքի ճանապարհին, Բոբոլի աղբյուրից մի կուշտ ջուր խմեցինք, ապա լցրեցինք կաղնե երկու կուժը և բարձեցինք էշին:

Մեղմ խշշում էր անտառը: Անուշ բուրում էր հնձած խոտը, ասես սեխի բոստանում լինեինք:

Գեղամ պապը բնության մի մասնիկն էր, առանց նրա ոչ ծրաջան մեղվանոցը կլիներ, ոչ էլ աշխատավոր մեղուների այն միալար աղմուկը, որ հիմա արձագանքի նման վերադառնում է հիշողության հեռուներից... և ոչ էլ, թվում է, մասրենու թփերի մեջ մշտարթուն խոխոջող Բոբոլի աղբյուրը:

Պապը ցույց տվեց, թե խոտհարքի որ ծայրից ենք հավաքելու և ինչ ենք բլրելու խոտը: Գործի կպանք: Ասեմ՝ հեշտ էր, հեշտ չէր, բայց հաճելի էր, որ օգնում էինք պապին: Եղանը չոր խոտի տակ տալով լաս-լաս հավաքում էինք, կիտում այս ու այնտեղ, հետո բլրում, դարձնում երկու մարդաբոյ ու շարժվում առաջ:

Ցածում Ծղնգանի ձորն էր: Ձորաշուրթով սայլի ճանապարհ կար, որով սայլվորները կրելու էին մեր բլրած խոտերը: Ծղնգանի ձորը խորը չէ, բայց ընդգրկումը մեծ է:

Ձորի հատակին գետակը ինչ որ ապակու կտոր, փայլփլում էր արևի ճաճանչների տակ: Ձորաշրթին մնջված նայում էինք բնության այդ գեղեցկությանը: Ձորն ասես կանչում էր մեզ և երևի ընկերներս էլ ինձ պես մտածում էին թևեր ունենալու և ձորի գմբեթի տակ թռչունների պես ճախրելու մասին:

Կեսօր էր... Աննկատ անցել էր ժամանակը:

Գեղամ պապը գոհ մնաց մեր արած գործից: Բեղերը ոլորեց ու եղանը խրելով բլրի մեջ, եկավ նստեց մեր կողքին, դարավոր կաղնու ստվերի տակ, որ արծվի բնի պես թառել էր ձորաշուրթին:

— Էլ գործ ունե՞նք անելու,— հարցրեց Գառնիկը:

— Չէ, Գառ ջան... — պապը ժպտաց: — Հիմա մի քիչ հանգստանանք ու գնանք մեղվանոց:

— Ես ուզում եմ ձորը իջնել,— ասաց Գառնիկը:

— Ի՞նչ կա ձորում,— անփույթ ասաց պապը:

— Ձորում, լսել եմ, խաչքար կա, ուզում եմ աչքովս տեսնել:

— Սպասիր, մի պատմություն անեմ, հետո կգնաս:

Այդ պահին մեր գլխավերևում կանգնեց ձիավոր Փասին: Քթի տակ խնդմնդալով ցած իջավ ձիուց:

Գեղամ պապի պատմությունը ոնց որ չստացվեց:

Մակիչ ու Վարդան անունով եղբայրներ են եղել, ապրել են հնում և գյուղացիները սիրել են այդ ուժեղ ու բարեսիրտ եղբայրներին, մեկ-մեկ էլ ծիծաղել նրանց միամիտ բնավորության վրա: Մի աշնանամուտի, սարից գյուղ իջնելիս, Մակիչը՝ մեծը, ետ է մնում եղբորից: Վարդանը տեսնում է, որ եղբայրն ուշանում է, ետ է դառնում... Եվ արջի հետ կռիվ բռնած Մակիչը եղբորը հորդորում է՝ դու գնա, ասում է, ես կռիվս կվերջացնեմ ու կգամ, թե չէ ամոթ է, արջը կգնա ու կըգանգատվի, որ երկուսով թակեցինք իրեն...

— Փչո՞ց է...— ասաց Փասին:

— Չէ, եղած բան է,— պնդեց պապը:

Փասին տեղի չտվեց:

— Մաքուր փչոց է...

Պապը խոժոռ նայեց նրան:

— Գնացինք,— ու ինքն առաջ ընկավ:

Նեղլիկ կածանն ի վար, քարից քար թռչելով իջանք ձորը: Փասին գալիս էր պոչից: Ծերունին մեզ տարավ ու կանգնեցրեց հնամենի մի խաչքարի առջև: Անկրկնելի հուշարձանի վրա խաչը հենվել էր կռիվ բռնած մարդու և արջի պատկերով քանդակի վրա: Լոռեցի անանուն քանդակագործի կերտած այդ խաչքարը բնության ու նրա զավակների ուժի հավերժության խորհրդանիշն էր:



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԼԻԼԻԹ ԲՈՅԱՄՅԱՆ




Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Եսթերը թմփլիկ մատիկը հպեց ծիծեռնակի տաք կրծքին՝ համոզվելու համար, որ նա շնչում է: Ծիծեռնակը բացեց աչքերը, մի պահ տխուր նայեց Եսթերին, անկամ բարձրացրեց թևերից մեկը ու էլի քնեց:

— Չէ, շնչում է, թևն էլ շարժեց, ուրեմն լավանում է,— ինքն իրեն հանգստացրեց Եսթերը:

Եսթերը տեսել էր նրան դեռ առավոտյան, երբ անլվա, կարգին չհագնված ու չսանրված, հետևաբար նան չնախանաշած, հայտնվեց գիշերային կատաղի քամուց ու անձրևից ծեծված բակում: Նախ, մի սև բան նկատեց, ապա մոտեցավ ու հասկացավ, որ դա թռչուն է: Մտածեց՝ ճնճղուկ է, բնից է ընկել: Բայց երբ ձեռքն առավ ու զննեց, տեսավ մկրատաձև պոչիկը, իսկույն գլխի ընկավ, որ ծիծեռնակ է: Նրա սաթե փետուրները թրջվել էին անձրևից ու կպել իրար, իսկ մարմինը լրիվ սառել էր:

— Գնամ տիկնիկիս վերմակը բերեմ ու փաթաթեմ,— արագ կողմնորոշվեց Եսթերը: Դա մի փոքրիկ, հաճելի, վարդագույն երեսով վերմակ էր, ինչպիսին ծիծեռնակը երևի կյանքում չէր ունեցել, նույնիսկ հիվանդ ժամանակ: Եսթերը ծիծեռնակին քնած-քնած ներս տարավ ու կանչեց թաղի բոլոր երեխաներին, որ տեսնեն նրան, զգուշացնելով ամեն մեկին, որ ծիծեռնակին չարթնացնեն:

Երեխաներից ամեն մեկը մի կարծիք հայտնեց. մեկն ասաց՝ բնից է ընկել, մյուսը՝ թե քամին է խփել, երրորդը՝ թևն է ջարդել, չորրորդը՝ սոված է մնացել: Բավական դիտեցին, խոսեցին, եկան համընդհանուր մի որոշման, որ պետք է տաք պահել, չանհանգստացնել, կերակրել բացառապես հացի փշրանքով և ջրով: Հոգնեցին, ձանձրացան ու գնացին: Եսթերը մնաց մենակ իր սիրուն ու վիրավոր ծիծեռնակի հետ: Ու հենց այդ պահին էլ մտածեց, որ ծիծեռնակը, այսպես քընած, կապույտ ու մեծ երկինքն է տեսնում երազում...

Անցավ երեք օր: Եսթերը համբերությամբ խնամում էր ծիծեռնակին: Մայրը ասաց, որ պետք չէ վերմակով ծածկել, դրանից նա կնեղվի, հարկավոր է միայն խնամել: Եվ Եսթերը խնամում էր: Ծիծեռնակը, ճիշտ է, թռչել դեռ չէր կարողանում, բայց թևիկները սկսել էր կարգին թափահարել: Եսթերը վերցնում դընում էր ափին, երկար նայում արդեն առվոր, փոքրիկ ու շարժուն աչուկներին և խոսում հետը. «Քեզ ի՞նչ է եղել, հը՞, թև՞դ է ցավում, ինչո՞ւ չես թռչում»: Ծիծեռնակը լսում էր անշուշտ, հասկանում ամեն ինչ, բայց չէր պատասխանում:

— Պետք է քեզ կամաց-կամաց վարժեցնել,— որոշեց Եսթերը: Ու անցավ գործի: Մոտակա բացատում սկսեց ցածր թռիչքներ կազմակերպել: Փորձը հաջող անցավ: Կամաց-կամաց ծիծեռնակի անուժ թևիկները ուժակալում էին ու նա թռչո՛ւմ էր, թռչո՛ւմ... Բայց մի փոքր տարածություն միայն, հետո նորից քարի նման վայր էր ընկնում:

— Ինչո՞ւ չես կարողանում թռչել,— տանջվում էր Եսթերը:

Նա որոշեց մի անգամ ծիծեռնակին նետել հեռու: Այս անգամ ծիծեռնակը ոչ թե թռավ, այլ կարելի է ասել, բավականին տեղ ճախրեց, նույնիսկ կարծես ճըռվողաց, բայց էլի... վայր ընկավ: Եսթերը վազեց, որ վերցնի...

— Էս ու՞ր կորար,— Եսթերը զարմացած չորս կողմն էր նայում: Մինչև որևէ բան կձեռնարկեր, կատուն փախցրեց ծիծեռնակին, Եսթերի ականջներում թողնելով ծիծեռնակի վերջին աղեկտուր ծվծվոցը: Եսթերը հասկացավ, որ ծիծեռնակը այլևս երազում չէր տեսնի կապույտ ու մեծ երկինքը: Նա տուն վազեց՝ աչքերը ողողված արցունքով ու երկար ժամանակ չկարողացավ պատմել, թե ինչ կատարվեց:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆ ՀՈՎՆԱԹԱՆ

## ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒՆ

Հայոց լեզուն լեզուն է իմ մոր,
Իմ հոր լեզուն է հայոց լեզուն,
Մասիսի նման և՛ հին է, և՛ նոր,
Մասյաց Մասիս է հայոց լեզուն:

Հայկական հողը մայրն է լեզվիս,
Հայոց աշխարհն է հայոց լեզուն,
Հայոց լեզուն է բազուկն հայրական,
Մայրերի մայրն է հայոց լեզուն:

## ԱՆՄԱՐ ԿՐԱԿԸ

Այգում ես տեսա
Վառվող մի կրակ,
Իսկ այգին՝ ճերմակ,
Ճերմակ ձյունի տակ:

Եկել, պատել էր
Ձյունը աշխարհին,
Թռչնակն իջել էր
Զինվորի քարին:

Թռչնակն իջել էր
Այն քարին մարմար
Եվ տաքանում էր
Կրակով անմար:

## ԾԱՌԵՐԸ

Ծառերը տուն ունեն,
Այգին տունն է նրանց:
Մինչև հասնեն, պտղավորվեն՝
Մանկությունն է նրանց...
Նույն տեղն ապրելն
Ու մեռնելը՝
Սուրբ օրենքն է նրանց:



ՍԻԼՎԱ ԴԱՎԻԹՅԱՆ

## ՏԱՏՍ...

Հիշո՞ւմ եմ... դանդաղ գալիս է տատս,
Գոգնոցն է բուրում, ինչպես է բուրում.
Ուրց է հավաքել Լոռվա սարերից,
Մասուր է քաղել ու տուն է բերում:

Հիշում եմ նաև... ահա նա՝ տատս,
Հոգնած աչքերում ժպիտ ու կրակ,
Ուսերին իջած բեռը օրերի
Եվ գրպաններում չոր հացի փշրանք:

Հիշում եմ նաև... ահա նա՝ տատս,
Նստած մեր դռան կարկատած քարին,
Երգում է մեղմիկ, և մի աղջնակ
Մուշ-մուշ քնել է նրա ծնկներին:

## ԿԱՐՈՏ

Մանկությունս ջրերիդ հետ խառնվեց,
Ես մեծացա քո ափերին խաղալով,
Շատ ծաղիկներ, անմոռուկներ քաղեցի,
Ինքս էլ՝ ծաղիկ, կարմիր-ճերմակ շորերով:

Դեբեդ, չքնաղ իմ երգարան, իմ կարոտ,
Լեռների մեջ հար ծփացող տիրուհի.
Դեբեդ, դու իմ հին խռովքն ես ջուր դարձած,
Որ գնում ես դեպի ծովերն աշխարհի:

Մանկությունս քո ջրերին խառնվեց,
Ես մեծացա, հեռացա քո ափերից,
Բայց հավիտյան դու երգում ես հոգուս մեջ
Իմ մանկության օրերից:

Նկ. ԲԱԳՐԱՏ ԱՐԱՋՅԱՆԻ



ԿԱՐԴԱՑԱԾԴ ԳՐՔԵՐԻՑ
Ո՞Ր Է ԱՄԵՆԱՄԵԾ
ՏՊԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ ԹՈՂԵԼ
ՔԵԶ ՎՐԱ ԵՎ ԻՆՉՈ՞Ւ

# Դարձա ուրիշ աղջիկ

Իմ կարդացած առաջին գրքերից ամենաուժեղ տպավորությունն ստացել եմ Վախթանգ Անանյանի «Հին վրանի փոքրիկ բնակիչը» գրքից: Որքան անկեղծություն, գյուղական երեխայի պարզամիտ հոգու ինչպիսի գունեղ նկարագիր, աշխույժ գրելաձև, հումոր ու թախիծ կա այդ գրքում: Նկարագրվող հերոսներն ու դեպքերը համոզիչ են, հետաքրքիր: Գրքի առաջին տողերը կարդալիս հուզվում և ալեկոծվում էր հոգիս, ապրում էի յուրաքանչյուր հերոսի կյանքով, ուրախանում նրանց հետ միասին, երբեմն էլ արտասվում: Երբ վերջացրի գրքի ընթերցանությունը, կարծես ուրիշ աղջիկ էի: Ինքս ինձ չէի ճանաչում: Ինձ զգում էի համարձակ, անվախ, խիզախ, բայց միաժամանակ զգայուն ու քնքուշ, երկար ժամանակ խորհում էի նրա հերոսների հետ: Այս գիրքը ինձ համար ունեցավ ճանաչողական և դաստիարակչական նշանակություն: Ես ավելի լավ պատկերացրի այն ծանր ու դժվարին պայմանները, որի մեջ ապրել են այդ ժամանակի շատ երեխաներ, ինչպիսի դառնություններ են կրել նրանք: Ես ցանկանում եմ այս գրքի գլխավոր հերոսի նման երբեք չընկճվել, չհուսահատվել, և թեկուզ մեծ դժվարություններով հասնել նպատակիս:

ՍՈՒՍԱՆՆԱ ԳԱՍՊԱՐՅԱՆ,
Մարտունաշենի միջն.
դպր. 10-րդ դաս. աշ.

# Պիոներական վզկապի և պիոներական կրծքանշանի մասին

Հայաստանի ՀԼԿԵՄ Կենտկոմը սահմանել է պիոներական վզկապի և պիոներական կրծքանշանի հանձնման ու պահպանման հետևյալ կարգը։

Պիոներական վզկապը և պիոներական կրծքանշանը պատանի լենինյանին է հանձնվում Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության շարքերն ընդունվելու պահին։

ՀԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմի կողմից պիոներական կազմակերպության շարքերն ընդունվողին շնորհավորական բացիկ-կտրոն է տրվում, որով ծնողը կամ ջոկատավարը, քաղաքի, շրջանի համապատասխան խանութից ձեռք է բերում վզկապ, կրծքանշան, «Եղիր պատրաստ» հուշաթերթը և նվիրում նրան։

Պիոներին իրավունք է վերապահվում իր վզկապը փոխարինել նորով երկու ուսումնական տարուց ոչ պակաս օգտագործելուց հետո։ Եթե պիոների ամռանը լինում է պիոներական ճամբարում, ճամբարային երեք հերթերը համարվում են մեկ ուսումնական տարի։ Նման դեպքերում պիոները դիմում է իր ջոկատավարին, հանձնում է նրան իր հին վզկապը՝ անշուշտ մաքուր, արդուկված վիճակում, և ստանում է կտրոն՝ նորը ձեռք բերելու համար։

Ետ հանձնված վզկապները (ստացված կտրոնների քանակով) ջոկատավարը հանձնում է քաղաքային-շրջանային պիոներխորհրդին, որտեղ կազմվում է համապատասխան ակտ և դրանք հանվում են շրջանառությունից։

Պիոներական վզկապի կորչելու և կամ պատռվելու դեպքում պիոները գրավոր դիմում է պիոներական դրուժինայի խորհրդին։ Դրուժինայի խորհուրդը քննարկում է նրա դիմումը, տալիս նրան համապատասխան պիոներական տույժ և նոր վզկապ ձեռք բերելու իրավունք։ Այնուհետև պիոներական դրուժինայի խորհուրդն ինքը դիմում է քաղաքային (շրջանային) պիոներխորհրդին՝ խնդրելով իրենց դրուժինային տրամադրել համապատասխան քանակի կտրոններ։

Ավագ տարիքի պիոներները՝ ՀամԼԿԵՄ շարքերն ընդունվելուց հետո, իրենց վզկապը հանձնում են պիոներական դրուժինայի խորհրդին։ Նրանցից լավագույնին՝ դրուժինայի խորհրդի որոշմամբ, թույլ է տրվում վզկապը իբրև հիշատակ պահել իր մոտ։

Պիոներական տարիքն անցած աշակերտները նույնպես իրենց վզկապը հանձնում են պիոներական դրուժինայի խորհրդին։

Դպրոցներում պիոներական վզկապի և պիոներական կրծքանշանի հանձնման ու պահպանման սույն կարգին հետևելու պատասխանատվությունը դրվում է ավագ ջոկատավարի վրա։

**ՌՈԼԱՆԴ ՇԱՌՈՅԱՆ**

# Աղավնիները

**Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ**

Երեկոյան քեռի Մուրադը մտավ գոմ աղավնիներին չոր գարեքոքոնի փշրանքներ տալու և նկատեց, որ յոթ զույգ աղավնիներից մի զույգը չի վերադարձել: Անհանգստացած ելավ դուրս ու աչք ածեց շուրջը: Աշնան վերջին չորացած տերևներն էին թափվում ծառերից, մեղմ ու անշշուկ: Նա գնաց այգեմիջյան ճանապարհով, վերցրեց փայտե սանդուղքը, բերեց հենեց գոմի պատին ու բարձրացավ տանիք: Նրա հայացքը ձգվեց աշնան պաղ մշուշի միջով ու ոչ մի հավք չտեսավ: Եվ էն է, քեռի Մուրադն ուզում էր իջնել, երբ հայացքը դեմ առավ, ինչպես ինքն էր ասում «Մեր սարի» ճերմակ գագաթին: Մառախուղի թանձր շղարշի միջից հազիվ էր նշմարվում ձյունափառ գագաթը։ Բայց քեռի Մուրադի աչքի առջև աստիճանաբար մշուշը ցրվեց ու վերից վար պարզ գծագրվեց վիթխարի լեռը, կնճռոտ փեշերով: Քեռի Մուրադը չիմացավ էլ, թե ինչպես մտքերն իրար գրկեցին ու հայացքից էլ առաջ անցնելով, տարան հեռու... Աղամամութին Մուրադն արթնացել էր, մի թուրիկ բերնեբերան նոր մանրած թութուն էր լցրել, միջնեկ տղային՝ Գևորգին հետն էր վերցրել ու ելել տնից: Դեռ անցած աշնանը տալվորիկցի քավոր Վարդանին իր ծխելիք թութունից էր խոստացել: Եղարձին մռայլ էր Մուրադը՝ քավոր Վարդանից վատ լուր էր առել: Մի գլուխ ծըխում էր ու շտապում: Մեկ-մեկ շրջվում էր ու ետևից քայլող Գևորգին ասում.

— Տղա, լաո, քու աղունակներ լավ պահե, քավորով նվեր է:

— Բաղրաղղու՜, — գեղգեղում էին աղավնիները:

Գևորգն աղավնիների գլուխները ծոցից հանել էր դուրս։ Մերթընդմերթ նա կանգնում էր, ձեռքերն ուշիկ դնում կրծքին ու երբ լավ համոզվում էր՝ չեն թըռել-գնացել, վազում էր հոր ետևից:

Կտուց քարին չհասած՝ Մուրադը վայնասուններ լսեց ու վազեց դեպի ձորի պռունկը: Թուրք ձիավորները գյուղն առել էին կրակի բերան ու կոտորած սկսել: Մուրադի գլխին ոնց որ շիկացած խուփ դրվեց: Նա դողացող ձեռքը հպեց լայն ճակատին, սեղմեց ու դեմքն ի վար սահեցրեց: Երեսը քրտինքի մեջ կորել էր: Գևորգը սեղմվել էր հոր ոտքերին, այնպես որ աղավնիներին չվնասի ու հեկեկում էր:

— Ուու՜ու՜,— ոռնաց Մուրադը, պոկվեց տեղից, գրկեց մի մեծ քար ու տեղահան անելով գլորեց ձորն ի վար՝ այնտեղ, ուր թուրք ձիավորների մի խումբ էր կանգնած: Հետո հասավ մյուս քարին, դարձավ մեկելին: Ձիերն աջ ու ձախ ծառս էին լինում ու վարգելու ուղի չէին գտնում: Մուրադը սուրում էր այս կողմ, այն կողմ, ու հսկա քարերը գլորում ցած: Քարերը դղրդյունով դիպչում էին իրենցից փոքր չեչաքարերի, որձաքարերի, պոկում տեղից ու սարսափազդու գլորվում ներքև: Թուրքերը շփոթված սկսեցին կրակել ընկնող քարերի ուղղությամբ:

— Ուու՜ու՜,— գոռում էր Մուրադը, և նրա ոռնոցը որոտընդոստ, դղրդոցից էլ բարձր արձագանքում էր սար ու ձորում: Մի թուրք իջավ ձիուց և փորձեց վեր մագլցել։ Երկու մեծ քար գրկեցին թուրքին ու տապալեցին։ Վերջապես մի ձիավորի հաջողվեց խթանել ձին: Նրան հետևեցին մյուսները: Մուրադը երկար, ընկնավորի հայացքով նայեց փախչող թուրքերի ետևից, հետո դանդաղ, թևաթափ մոտեցավ Գևորգին և ուժասպառ ձեռքերով գրկեց որդուն:

— Իմ միակ ապավեն դու իս, Գևորգ, լաո:

Գևորգի ծոցում այդ պահին երեք սիրտ էր թպրտում:

— Տղա, լաո, քու աղունակներ հեշար պահե:

Մուրադը գրկեց իջեցրեց Գևորգին, դողդողացող մատներով տուփիկից թուղթ ու թութուն հանեց և ջղարս փաթաթեց:

— Դու սպասե,— ասավ Մուրադը,— ես իջնեմ ձոր՝ զենք ու փամփուշտ վերցում:

— Բա՜ղբաղու՜,— գեղգեղացին աղավնիները:

— Քեռի Մուրադ, է՜ քեռի Մուրադ,— նրան սթափեցրեց գյուղխորհրդի կատարածուի ձայնը:— Նախագահը կկանչե...

Քեռի Մուրադի դեմքը կարմրժել էր, խոժոռվել, արծվաքիթն ավելի էր ընդգծել անհուն վրեժով լի հայացքը: Նա անխոս, ծանրորեն իջավ սանդուղքով ու գնաց գրասենյակ:

— Կանչի՞ր իս, նախագահ,— կիսաբաց դռան շեմից հարցրեց քեռի Մուրադը:

— Կանչել եմ, քեռի Մուրադ,— տեղից ելնելով պատասխանեց նախագահը,— նա ձեռքով աթոռ առաջարկեց քեռի Մուրադին ու նստեց կողքին:

Նրանք մի պահ լռեցին: Քեռի Մուրադը ջղարա փաթաթեց: Նախագահը վառեց նրա ծխախոտը:

— Քեռի Մուրադ, ինչպե՞ս ես,— խոսք բացելու համար սկսեց նախագահը:

— Լավ իմ,— կտրուկ խոսքի վրա եկավ քեռի Մուրադը, բայց պատասխանի վրա սիրտր զարկեց,— Գևորգեն վաղուց խաբրիկ չունենք... Մեր շատ կտանջվի, ես նմանապես...

Նախագահը գրկեց քեռի Մուրադի ուսն ու սեղմեց իրեն:

Այդ անսովոր քնքշանքը քեռի Մուրադին հաղորդեց այն, ինչ նախագահի շրթունքները դժվարանում էին հաղորդել:

Քիչ անց գյուղամիջյան ճանապարհով բոթաբեր ծրարը ձեռքին, ծնկներն հազիվ ծալելով, քեռի Մուրադը լռելյայն քայլում էր: Աչքի առաջ Գևորգն էր՝ ծոցում տալվորիկցի քավոր Վարդանի նվիրած աղավնիները: Գևորգը ձեռքերն ուշիկ հպում էր կրծքին ու երբ լավ համոզվում էր, որ աղավնիները տեղում են, վազում էր, որ հասնի հորը: Քեռի Մուրադը մեկ-մեկ շրջվում էր դեպի Գևորգն ու ասում.

— Տղա, յառ, քու աղունակներ լավ պահե:



ԷԴՎԱՐԴ ՍԱՐԳՍՅԱՆ

# ՆՐԱՆՑ ՍԻՐՏԸ ԼԵՌՆԵՐՈՒՄ Է

## 16. ԱՐՓԱՅԻ ՀՈՎՏՈՒՄ

Ես ու որսորդ Մագիլը մի քանի օր շարունակ չափչփում էինք Վայքի արևախանձ սարերն ու ձորերը՝ նոր քարանձավներ որոնելով: Նման հետախուզության ժամանակ Մագիլն անփոխարինելի ուղեկից էր:

Նախ գնացինք Աղավնաձոր գյուղի ձորը: Այնտեղ գտանք այն երկու անցքերը, որտեղից ձմռանը գոլորշի է բարձրանում: Անցքերը, որոնք օդի մշտական շարժումից ծխնելույզի նման սևացած էին, ցավոք այնքան նեղ էին, որ մարդը չէր կարող ներս սողոսկել: Մենք դրանք անվանեցինք Վիշապի անցքեր, որովհետև ըստ ավանդության, դուրս եկող գոլորշին քնած վիշապի շնչառությունն էր:

Մենք շատ երկար ու ապարդյուն որոնեցինք նաև այն վիհը, ուր տեղացիների ասելով կարող էր նաև մարդը մտնել: Մինչև կեսօր չգտանք, հետո էլ օրը տաքացավ և սկսեցին անհամար օձեր վխտալ, իսկ մենք երկարաճիտ կոշիկներ չունեինք և ստիպված որոնումները դադարեցրինք:

Հետո մտանք Ախտա Ծակերը, որ գտնվում է Արենի գյուղի այգիների մոտ:

Երբ Ռադիկը առաջին անգամ եղավ այնտեղ, քաղաք վերադառնալով հայտարարեց.

— Տղե՛րք, մի ժայռափոր քաղաք եմ գտել, առջևում՝ արհեստական լաբիրինթոս:

Ախտայի Ծակերից մեկի հատակով թաքնված առվակ էր հոսում ու լցվում Արփայի մեջ: Քանի որ գետը այդ օրերին հորդացած էր, կողային ճնշման հետևանքով առվակի ջրերը ետ էին հոսել ու լցվել քարանձավը: Անձավում մի զուլալ լիճ էր առաջացել: Նրա մեջ խայտող ձկները հուշում էին որ այդ լիճը հաղորդակցություն ունի Արփայի հետ: Հետագայում տեղացիները մի դեպք պատմեցին, որը հաստատում էր այդ ենթադրությունը. մի քանի տարի առաջ որսագողերը մտնում են քարանձավ ու նրա խորքում՝ հատակի մեջ գտնվող անցքի մեջ, որտեղից լսվում էր ստորերկրյա ջրի քչքչոցը, քլորակիր են լցնում: Դրանից հետո մի ամիս շարունակ գետի մեջ բխող աղբյուրներից սատկած ձկներ էին դուրս գալիս: Նշանակում է, քարանձավի տակ ջրով լցված մի ուրիշ դահլիճ էլ կա, որ ձկներն ընտրել են որպես ձվադրման տեղ:

Մի քանի ամիս հետո, երբ Արփայի ջրերը իջել էին, մերոնք գնացին այդ քարանձավը: Լիճը չքացել էր: Վարդանը սուզվել էր Ար-

փայի հատակը, որպեսզի գտներ ստորգետնյա անձավի մուտքը, բայց պարզվել էր, որ այն ճեղքով, որտեղից բխում էին հորդ աղբյուրները ու որտեղով ձկները մտնում էին քարանձավ, մարդը չէր անցնի:

Մի տխուր ավանդություն է կապված Ախտայի Ծակերի հետ. պատմում են, որ մի անգամ գարնանը, երբ Արենիի բնակիչները թշնամու աչքից թաքնված են լինում Ախտայի Ծակերում, մի երեխա սկսում է լաց լինել: Երևի սոված է լինում կամ հիվանդ: Մայրը չկարողանալով նրա լացը կտրել, նետում է գարնան վարար գետը, որ չլինի թե թշնամիները լացի ձայնի վրա գան գտնեն ուտեստներով քողարկված անձավներն ու սրի քաշեն ժողովրդին:

Թե ե՞րբ է տեղի ունեցել այդ ողբերգությունը, դժվար է ասել, բայց Ծակերից մեկից մենք տասներորդ դարի մի պղնձադրամ գտանք:

Օրեր շարունակ ես ու Մագիլը թափառում էինք Արենի գյուղի հանդերում, և ես չէի կարողանում չզարմանալ այդ վայրերում քարայրների առատությունից, որն արդեն գիտական շրջանառության մեջ էր մտել «Արենիի կարստային տեղամաս» անվանումով: Այդ տեղամասի ամենահետաքրքիր հատվածներից մեկն էլ Ջրի ձորի քարանձավներն էին, որ կրում էին Մեծաքերան արտահայտիչ անունը: Այդ քարանձավներն իրենց ամբողջության մեջ դիտվում էին որպես մի սքանչելի բնական քարանձավային ամրոց, որը վիթխարի պայտի նման գրկում էր Ջրի ձորը: Որպես բնական ամրոց նրա օգտագործման պատմությունը նույնքան հին կարող է լինել, որքան ընդհանրապես Վայոց ձորում հայտնված առաջին մարդկանց պատմությունը:

Մեծաքերանի քարանձավներում մենք գտանք և՛ հնկա դահլիճներ, և՛ քարե ծաղիկներ, և՛ նույնիսկ մի գյուրզա, որը մեզ տեսնելիս նահանջեց համարյա նույնքան հապճեպ, որքան մենք:

Մեր հետախուզության վերջին օրը Մեհրու ձորում Մագիլը ինձ ցույց տվեց եղնու արմատներով քողարկված մի անցք: Մենք ներս սողացինք ու հայտնվեցինք մի մեծ կարստային քարայրում, որի մի անկյունից ջուր էր կաթում: Մագիլը պատմեց, որ շատ տարիներ առաջ ինքն այդ կաթոցի տակ մի կլոր գունդ է գտնում: Հանում է դուրս, ջարդում ու տեսնում, որ մի փոքր կճուճ է, բայց ջրի բերած աղերով այնքան է պատվել, որ միայն մի փոքր անցք էր մնացել: Ինչպես երևում է, այդ կճուճը շատ դարեր է մնացել այդ կաթոցի տակ, մինչև որ լրիվ աղակալել է: Դա մի նոր ապացույց էր, որ Մեհրու ձորը վաղուց է աղբյուրներից զրկվել:

Խորհրդավոր կճուճի քարանձավից ծանոթանալուց հետո մայրամուտին մենք մոտեցանք Քարայծի Մեծ վիհին: Ես մի մեծ քար գլորեցի վիհի մեջ ու նայեցի վայրկյանաչափին, որպեսզի տեսնեմ, թե քանի վայրկյան հետո են աղավնիները օդ բարձրանում: Քարը դղրդացրեց անդունդը, բայց աղավնիները չհայտնվեցին: Ես գցեցի երկրորդ քարը, հետո երրորդը: Աղավնիները չկային: Մագիլը բացատրեց, որ աղավնիները միայն ցուրտ եղանակին են վիհը մտնում: Հետո էլ պատմեց, թե իրենց պապերի պատմելով, ինչպես էին Մեհրու ձորի հնադարյան ամրոցի բնակիչները աղավնիներ որսում վիհերի միջից. լուսաբացին կամ մայրամուտին, երբ աղավնիները հավաքված էին լինում վիհերի մեջ, նրանք վիհերի բերանները ծածկում էին ցանցով ու քար գլորում անդունդը: Խուճապի մատնված թռչունները վեր էին սլանում դեպի փրկարար անցքը ու հարյուրներով խճճվում ցանցի մեջ:

Երբ Մագիլը պատմեց, չգիտեմ ինչու ինձ թվաց, որ հնում այդ վիհը օգտագործվել է նաև որպես մահապատիժների վայր, ինչպես օրինակ պարսիկները, Խորենացու ասելով, առասպելական Բյուրասպին «սպանել և գցել են մի մեծ ծծմբային վիհի մեջ», կամ առասպելական Շամիրամի նման, որը մարտի դաշտում ընկած Արա Գեղեցիկի դիակը նետեց վիհի մեջ:

Վիհի առջևի տաք քարերին նստած՝ ես խորհում էի ու հիանում արևի վերջին շողերով, երբ Մագիլը հանկարծ մատը դրեց շուրթերին ու լուռ ցույց տվեց մոտակա լանջը: Ես տեսողությունս լարեցի, բայց իրար վրա թափված ժանգագույն քարերից բացի ուրիշ բան չտեսա: Հետո քարերի մեջ մի բան շարժվեց և ես վերջապես նկատեցի այն, ինչը վաղուց էր տեսել տեսողությունից զանգատվող հին որսորդը: Մի մեծ քարայծ փառահեղ եղջյուրները քարերի միջից ցցած՝ մեզ էր նայում: Ինձ թվաց, թե այս քարայծը գիտի, որ վիհն իր անունը ստացել է որսորդ Մագիլի կողմից սպանված իր նախահոր պատվին: Ու հիմա նայում է իր տոհմի թշնամուն ու իր նախահոր անվան անդունդին:

Քարայծը երկար նայեց մեզ, հետո շրջվեց ու դանդաղ հեռացավ, նախապես տագնապի ազդանշան արձակելով Ծիշ քարի մյուս կողմում թաքնված իր հոտի կողմը:

Նայելով հեռացող քարայծի ետևից, մտածեցի, թե մենք վիհին ի՞նչ հարմար անուն ենք տվել:

(շարունակելի)

# ՀԱՐՑԱԶՐՈՒՅՑ ԲԱՐՈՆ ՄՅՈՒՆԽՀԱՈՒԶԵՆԻ ՀԵՏ

**Դուք անշուշտ ծանոթ եք Ռասպեի «Բարոն Մյունխհաուզենի արկածները» գրքին և դիտել եք համանուն մուլտֆիլմը: Այդ գրքում պատմվող դեպքերը թեև հավատալի չեն, բայց հետաքրքրաշարժ են ու ծիծաղելի:**

**Եկեք Բարոն Մյունխհաուզենի հետ մտովի հարցազրույց վարելով, տեսնենք, թե պատմվող դեպքերի ի՞նչն է հավանական և ի՞նչը անհավանական:**

— Հարգարժան բարոն, մեր առաջին հարցը վերաբերում է Ձեր «Մազերից» պատմվածքին: Իսկապե՞ս, Ձեր այն պնդումը, որ մարդը կարող է ինքն իրեն վեր բարձրացնել սեփական մազերից բռնած, կարելի՞ է համարել Ձեր գլխավոր գիտական հայտնագործությունը:

— Կարծում եմ՝ ոչ: Մազերից բռնած իրեն վեր բարձրացնելու կարողությունը բոլորովին էլ գիտական չէ և ոչ էլ հայտնագործություն է:

— Դուք, երևի, ըստ Ձեր սովորության, կատակու՞մ եք:

— Ոչ:

— Խնդրի էությունը մեր ընթերցողներին պարզելու համար, խնդրում եմ, մեկ անգամ ևս պատմեք, թե այդ ինչպես պատահեց:

— Մեծ հաճույքով: Դա թուրքերի հետ պատերազմի ժամանակ եղավ: Այդ պատերազմում ես շատ արկածներ ունեցա: Մի անգամ, հետապնդող թուրքերից փրկվելու համար, փորձեցի ձիով ցատկել ճահճի վրայով: Բայց ձիս չկարողացավ ցատկել մինչև ափ և մենք շրմփացինք լպրծուն ցեխի մեջ:



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Ընկանք և սկսեցինք սուզվել: Փրկության հույս չկար:

Ճահիճը սոսկալի արագությամբ մեզ ավելի ու ավելի խորն էր ներքաշում: Արդեն ձիուս ամբողջ մարմինը սուզվել էր, շուտով գլուխս էլ խրվեց և ճահճից դուրս ցցված մնաց միայն կեղծամիս հյուսքը:

Ի՞նչ էր մնում անել: Մենք անպայման կխեղդվեինք, եթե ես այսքան արտակարգ ուժեղ ձեռքեր չունենայի: Ես շատ ուժեղ եմ: Բռնելով այդ հյուսքից, ամբողջ ուժով քաշեցի դեպի վեր և առանց մեծ դժվարության դուրս հանեցի ճահճից և՛ ինձ, և՛ ձիուս:

— Թույլ տվեք մի հարց ևս տալ: Ինչո՞ւ դա գիտական հայտնագործություն չեք համարում: Մի՞թե նրա համար որ դա հակասում է ֆիզիկայի օրենքներին:

— Դուք ճիշտ չեք: Մի՞թե հենց այդպես չի վարվում հեծանվորդը, երբ ճանապարհի երթևեկելի մասից մայթ է մտնում: Այն պահին երբ առջևի անիվը մոտենում է մայթեզրին, հեծանվորդը ղեկը քաշում է դեպի իրեն, բարձրացնելով հեծանիվի առաջամասը, և հեծանիվը դյուրությամբ բարձրանում է մայթի վրա:

... Ընթերցողներին խնդրում ենք պատասխանել. թե ինչո՞ւ բարոնը չէր կարող ինքն իրեն հանել ճահճից:

— Հիշենք Ձեր պատմվածքներից ևս մեկը՝ «Անվրեպ կրակոց»-ը: Այն մեզ նույնպես հետաքրքրեց ՝ ֆիզիկայի օրենքների տեսանկյունից:

— Իսպանացիները պաշարել էին անգլիական Ջիբրալթար ամրոցը: Ես նույնպես պաշարվածների մեջ էի: Ջիբրալթարի պատին կանգնած հեռադիտակով տեսա, որ իսպանացիները թնդանոթի փողն ուղղում են հենց այն տեղի վրա, որտեղ կանգնած էինք մենք:

Գլուխս չկորցրի, իսկույն հրամայեցի, որ հենց այդտեղ դնեն մեր ամենամեծ թնդանոթը:

Թնդանոթը մոտեցրին, և ես իսկույն դրա փողն ուղղեցի ճիշտ դեպի թշնամու թնդանոթի փողը:

Երկու թնդանոթներն էլ որոտացին նույն ակնթարթին: Ու տեղի ունեցավ հենց այն, ինչ ես ուզում էի. մեր և թշնամու ռմբագնդերն օդում բախվեցին իրար և թշնամու ռմբագունդը ետ թռավ: Դուք պատկերացնո՞ւմ եք: Այն ետ թռավ դեպի իսպանացիները: Մեր ռմբագունդը ևս քիչ տհաճություններ չպատճառեց նրանց, ընկավ թշնամու ռազմանավի վրա և խորտակեց այն:

— Շնորհակալություն, բարոն, հետաքրքիր պատմության համար: Բայց դժվար է հավատալ, որ երկու ռմբագունդն էլ բախվելուց հետո շարունակել են շարժվել նույն ուղղությամբ և ընկել թշնամու վրա:

Ստիպված ենք նորից օգնություն խնդրել մեր ընթերցողներից այդ վիճելի հարցը քննարկելու համար:

Բարոն Մյունխհաուզենի այս պատմության մեջ ի՞նչն է հավանական և ի՞նչը անհավանական, և ինչո՞ւ:

**ԱՐՏԱԿ ՌՈՍՏԱՆՅԱՆ**

ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

## ՄԵՐ ՇՈՒՆԸ

Շունը շատ էր հիվանդ
Ու շատ ծեր էր շունը,
Ոչ ուտել էր ուզում,
Ոչ տանում էր քունը:
Պառկել ամառվա մեջ
Վնգստում էր, դողում,
Արցունքները հիվանդ
Փոշում էին լողում:
Շան աչքերում մարող
Խաղաղ օրն էր մեռնում:
Հայրս եկավ-տարավ,
Ու անձրև էր տեղում...

Մեր որբացած բակը,
Եվ հաչոցը մթնում,
Լուռ լալիս էր տատը...
Նստել էինք տրտում:

## ԵՐԳ

Անձրև մաղիկ-մաղիկ,
Դաշտին իջած շաղիկ,
Անձրև մանրիկ-մանրիկ՝
Ոնց որ նռան հատիկ:
Արի՛, արի՛, արի՛,
Մանր անձրև բարի,
Թափվիր արտին ծարավ,
Թափվիր առվին բարակ:
Արև, ժպտա մեղմիկ,
Արև ոսկեթևիկ,
Ծիածանը՝ գոտի
Կապիր մեջքին ամպի:
Այ խռովկան աղջիկ,
Այ դու լացկան աղջիկ,
Վազի՛ր, վազի՛ր, գնա,
Ծիածանի նախշո՛վ,
Ծիածանի գույն-գույն
Մազե կամուրջն անցիր...

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# ՀՈՆԻՆ

Բացատում կանգնել էր անծանոթ մի աղջիկ, հաստատ կարող եմ ասել, որ, քաղաքից էր: Ձեռքին հենց նոր պոկած մեծ-մեծ ճյուղեր էին, ինքնամոռաց նայում էր նրանց վրայի կարմիր պտուղներին, հիանում ու հիացմունքով ժպտում: Հետո պոկածները քիչ համարեց, ճյուղերը դրեց կանաչներին, նորից ծառին մոտեցավ, ճյուղից ճյուղ անցավ՝ որոնելով ամենամեծն ու հասունացածը: Գտավ: Դժվարությամբ պոկեց չհնազանդվող ճյուղը, որն այդ պահին պայքարի մեջ էր մտել նրա հետ և համառորեն դիմադրում էր, բայց պարտվեց: Աղջիկը նոր ճյուղեր ավելացրեց կանաչների վրա դրվածներին, հըպարտ կանգնեց բացատի երևացող տեղը և տիրաբար կանչեց.

— Գևո՛րգ, Գևո՛րգ... այստեղ եմ... Այստեղ լավ ճյուղեր շատ կան:

Անտառի լանջերին ձայնն արագ է տարածվում, անտառը շուտ է արձագանքում կանչերին, և նա, ում ձայնում էր աղջիկը, շուտ լսեց:

— Էլի պոկիր... Հիմա կգամ...

Իսկ երրորդ դասարանցի Համիկը ծառի գագաթին էր: Մայրը ներքևից էր հավաքում, ինքը՝ վերևից:

— Զգույշ, բալիկ ջան, ճյուղերը չպոկես, եկող տարի էլ են պետք գալու:

Տղան առանց այն էլ զգույշ էր հավաքում, նույնիսկ վախենում էր տերևներին վնասել: Գիտեր, որ ծառից միայն հասունացած պտուղները պետք է վերցնել, խղճում էր տերևներին, դեռ կանաչ են, երբ ժամանակը գա, կդեղնեն ու իրենք իրենց, քամու հետ պարելով ու խաղալով կթափվեն: Համիկը ծառի գագաթից լսեց ու տեսավ աղջկան, նրա պոկած ճյուղերը տեսավ ու զարմացավ:

Օգոստոս ամիսն էր, և անտառը լիքն էր հոն հավաքողներով: Բնությունը առատաձեռն է. Հայաստանի այս գողտրիկ լեռնաշխարհին ճոխ ու գեղեցիկ անտառ է պարգևել: Մեր նախնիները անտառից օգտըվելու իրենց դարավոր օրենքներն են մշակել, որ փոխանցվել է սերնդեսերունդ և սրբորեն կիրառվել: Մինչև չհասունանային պտուղները, ոչ ոք իրավունք չուներ անտառ մտնելու: Մոռն ու մոշը, տանձն ու խնձորը, կաղինն ու հաճարը, ամե՛ն, ամե՛ն պտուղ իր հավաքելու ժամանակն ունի: Հոնն էլ իր օրերն ունի: Ցավոք, վերջին տարիներին դարավոր ավանդույթը սկսեց խախտվել: Ծառի ճյուղերին կանաչ փոքրիկ պտուղները նոր-նոր կարմրին են տալիս թե չէ, մեկ էլ տեսնում ես շաբաթ ու կիրակի օրերին, անգամ քաղաքներից ավտոմեքենաներ են, որ գալիս անտառ են մտնում, ծառերը ճյուղակոտոր անում ու մեծ ավարով վերադառնում: Այդ օրերին անտառում կռիվն անպակաս է՝ սրտացավ մարդիկ վիճում են, բացատրում, անհասկացողներին աշխատում հասկացնել, որ ծառերը մի օրվա համար չեն, որ ճյուղակոտոր լինելիս, չորանում են: Սակայն, ասողն ինքն ասում, ինքը լսում է: Եվ տուժում են խեղճ հոնիները:

Հոնի՞ն... անտառում գարնան առաջին ավետաբերն է նա: Դեռ թաց են խաշամն ու ծառերի արմատները, դեռ ձյան հալոցքից առվակներն են գաղտագողի հոսում, դեռ չգիտես կկուն որտեղ է քնաթաթախ աչքերը տրորում ու միամիտ կարոտով օրերի ջերմանալուն սպասում, որ անտառից տաք քամիները լուր բերեն ու կկվային իր ձայնը զլի և արար աշխարհով մեկ կու-կու կանչի, այսինքն՝ թե գարուն է, զարթոնք է, արբեցում է, ողջույն, կյանք ու առավոտ... այդ նույն ժամանակ հոնիների ճյուղերին կոկոնները պայթում են զսպված ժպիտների նման:

Իր բնավորությունն ունի ամեն մի արարած: Իր բնավորությունն ունի նաև ամեն բույս ու ծառ, նաև՝ հոնին: Նա աճում է անտառի խիտ ու ստվերոտ վայրերում, լանջերին ու ձորակներում, հարևանություն է անում ամեն տեսակ թփերի ու ծառերի հետ և չի դժգոհում որևէ մեկի հարևանությունից: Ահա կողքին արթուն պահակների պես շարված են շլորենիները, փշոտ սնձենին, խնձորը, տանձը, կաղնիները... Գարնանամուտի քամիներից սրթսրթում են նրանց անտերև ճյուղերը, իսկ հոնին ծաղկել է արդեն՝ դեղին, արևվագույն ծաղիկներով և խոնարհ հպարտությամբ սվվում է կաղնիների ստվերում:

Հոնին ծաղկում է և նոր ապա տերևակալում: Դեղինն ու կանաչը միախառնըվում են արմատից մինչև գագաթ, պըճնըվում գեղեցիկ ու շոյող հանդերձանքով: Հոնին գոհ է անտառի իր կյանքից: Օրերն անաղմուկ ննջում են նրա տերևների խորքում ու կանաչ պտուղները ամռան ընթացքում անաղմուկ կարմրում են: Բայց մեկ էլ ահա մարդիկ անտառ են խուժում աղմուկով, չմտածելով, որ ծառն էլ վիրավորվել գիտե, բողոքել, տրտնջալ գիտե... և գիտի պատժել:

Աչքերիս առջև է հոնի երկար ճիպոտը՝ բարալիկ, ճկուն, շարժունակ ճիպոտը, որով բուրդ են չփխում մեր մայրերն ու տատերը.

— Հոնի ճիպոտը տեսնու՞մ ես...

— Դասերդ սովորիր, թե չէ՝ հոնի ճիպոտր եկավ...

— Հոնի ճիպոտը...

Մեր ծնողներին էլ իրենց մեծերն են նույն հոնի ճիպոտով խրատել: Հիմա նայում եմ ճյուղակոտր ծառերին, սիրունատես աշխա գեղեցիկ ավարին ու մտածում՝ ահա թե ում պետք է ծեծել հոնի ճիպոտով, այնպես մղկտացնել նրա փափուկ տեղերը, որ հոնի անուն լսելիս ամոթից ու ցավից փշաքաղվի:

Անտառտնտեսության տնկարանի աշխատողներն ասում են, որ հոնի սերմը դժվար ծլարձակողներից է: Չորս տարի է պահանջվում, մինչև անհրաժեշտ խոնավությամբ է լցվում փոքրիկ կորիզը, որից հետո տեղադրում են հողի մեջ, նոր հոգատարությամբ շրջապատում, ինչպես նորածին երեխային, իսկ նա անտեսանելի միլիմետրերով բարձրանում, ելնում է արևերես: Քաղաքաբնակ աղջիկը երևի կարծում է, թե ինչ հեշտությամբ որ վայելում է կարմիր պտուղը, նույն հեշտությամբ էլ ստեղծվում է այդ բարիքը:

Անտառամերձ գյուղերի բնակիչներից ոմանք փորձեցին անտառափեշի հոնիները, իրենց հարևան թփերի ու ծառերի հետ, ցանկապատել, դարձնել սեփական այգի: Այնուհետև հոնիների հարևան թըփերն ու ծառերը ոչնչացրին, իրենց կարծիքով հոնիներին հնարավորություն տալով ազատ շնչելու: Ազատված հողատարածությունը դարձրին բանջարանոց և ամեն գարնան վարում ու ցանում էին, աշնանը հավաքում առատ լոբի, պոմիդոր, կաղամբ ու կարտոֆիլ: Հետո հերթը գալիս էր ծառերի բերքին, հասունացած պըտուղները ավելի մեծ բավականությամբ ու հրճվանքով էին հավաքում, համոզված, որ եկող տարի նույնպես առատ բերք կունենան՝ հոնի կոմպոտ ու մուրաբա, չիր ու օղի կպատրաստեն: Սակայն մի քանի տարի բերք ստանալուց հետո, կատարվեց զարմանալին՝ հոնիները ասես դժգոհ իրենց նկատմամբ ցուցաբերվող անհարկի հոգատարությունից ու իրենց շրջափակող մետաղե ցանցերից, սկսեցին կամաց-կամաց չորանալ: Մարդիկ հասկացան, որ հոնիները նրանով են հզոր, որ իրենց կողքին կան թփեր ու ծառեր, կան դաբերով հարևանություն անող սնձենիներ ու շլորենիներ, կաղնիներ ու զանազան մացառներ, որոնք ամուր են դարձնում նրանց արմատները, կենսունակ՝ ճյուղերը, առատ՝ բերքը:

Եվ հիմա չորացած ճյուղերը բողոքում են՝ մեզ պետք չէ ձեր հոգատարությունը, մարդիկ, մենք առանց հարևանության չենք կարող ապրել:

Նայում ես չորացող ճյուղերին, հիշում մեղավորներին ու մտածում՝ ահա թե ում պետք է ծեծել հոնի ճիպոտով:

ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԱՄԵՆԱՄԵԾ ՀՐԱՇՔԸ

## Ինչ են պատմում ժայռապատկերները



...Ալտամիրա քարայրը, ուր 1878 թվականի մի օր իր դստրիկի հետ ուղևորվեց հնագետ Մարսելինո Մաուտուոլան, գտնվում է Հյուսիսային Իսպանիայի Սանհանդեր նահանգում: Մաուտուոլյան ջահի լույսի տակ նկատեց, որ կենտրոնական սրահից բացի, քարանձավն ունի նաև խորքը տանող մի քանի անցումներ: Նա դստրիկին պատվիրեց կենտրոնական սրահից չհեռանալ, իսկ ինքը փորձեց թափանցել քարանձավի հեռավոր խորշերը: Բայց հազիվ էր Մարսելինոն ծածկվել ժայռի ետևում, երբ լսեց աղջկա սարսափով լի ճիչը:

— Նա՛, նա՛ ինձ է նայում,— սեղմվելով պատին մրմնջում էր աղջիկը:

Քարանձավի պատից իրոք նրան էր նայում մի վայրի ցուլ:

Հնագետը մեծ հայտնագործության առաջ երկար ժամանակ մնաց ապշահար կանգնած: Ամբողջ քարանձավը լցված էր գունավոր ձիերով, վարազներով ու եղնիկներով: Դա ամենաիսկական հնադարյան պատկերասրահ էր, անձավային արվեստի հրաշալի գլուխգործոց, որի տարիքը չափվում էր 16 հազար տարիներով: Ահա այսպիսի արկածով Ալտամիրա քարայրը բացեց իր գաղտնիքը և աշխարհը նրա միջոցով տեղյակ դարձավ նախնադարյան մարդու արվեստի նորահայտ առաջին ստեղծագործություններին:

Հետագայում Իսպանիայում և Ֆրանսիայում գտնվեցին քարեդարի արվեստի նորանոր նմուշներ: Իսկ ավելի ուշ աշխարհի հնագիտական քարտեզի վրա նրանց քանակն աճեց բազմանիշ թվերով:

Գիտնականները սկսեցին ուսումնասիրել նախնադարյան մարդու թողած նկարները, ցանկացան պարզել, թե ինչն է նրանց դրդել քարանձավի պատերին ու քարաժայռերի վրա նկարել: Սկզբում թվում էր, թե գեղարվեստական հաճույքը, բայց դա մոլորություն չէ՞ր. նախնադարի մարդը երևի դրա ժամանակը չուներ, թեև մասամբ, երբ կուշտ էր լինում ու հագեցած, նաև զվարճանում էր: «Քարանձավային նկարները մոգական արարողություններով են պայմանավորված»,— հայտարարեցին ազգագրագետները: Մին-

չև այժմ էլ նախնադարյան կենցաղով ապրող ցեղերի մեջ տարածված սնահավատություն կա. իբր, ով տիրում է կենդանի էակի նկարին, մոգական իշխանություն է ձեռք բերում այդ էակի վրա:

Ահա սրանով է բացատրվում ժայռային առաջին նկարների ստեղծումը, որոնք հետագայում փոխադրվեցին այլևայլ առարկաների վրա, հղկվեցին, հստակացան գծագրական տեսք առած և ինչ-որ չափով սիստեմավորվելով վերածվեցին գաղափարագրերի: Գաղափարագրերից էլ հետագայում առաջացան վանկագիրն, ապկված մինչև Սյունաց սարերը, Սևանից մինչև Մեծամոր: Դրանք մեր հանրապետության տարածքում ապրած քարե դարի, ավելի ուշ նաև բրոնզե դարի մարդու կյանքի, նրա շրջապատի վառ, պատկերավոր արտահայտություններն են: Քարեղեն այդ «գրքերը», որ ստեղծվել են մեր թվականությունից V—II հազարամյակ առաջ՝ հողմահարված, լերկ, պղնձագույն ու սև ժայռերի վրա, հազարամյակների հեռվից մեզ են հասցնում մեր հինավուրց երկրի վաղ անցյալի պատմությունը: Ինչի մասին էլ պատմելիս լինեն, ամեն տեղ



պա և հնչյունային գրերը:

Քարանձավային պատկերներն ու ժայռապատկերները գիտության համար հետաքրքիր են նաև նրանով, որ դրանց միջոցով կարելի է պարզել, պատկերացում կազմել, թե կենդանիների ի՞նչ տեսակներ են եղել, որ հետո անհետացել են, կամ եթե այսօր էլ դեռ կան, ապա ի՞նչ ժամանակներից են նրանք գոյատևում: Այդ իմաստով անգնահատելի տեղեկություններ են պարունակում Հայաստանի տարածքում գտնված ժայռապատկերները, որոնք սփռված են Արագածի լանջերից մարդն է, նրան շրջապատող կենդանական աշխարհը, երբեմն վայրի, երբեմն սանձված: Գերակշռողը այծի պատկերներն են: Դրա համար էլ ժողովուրդը դրանց անվանել է՝ «իծագրեր»: «Իծագրերում» քիչ չեն նաև շան, գայլի, շնագայլի, հովազի, վարազի, վիթի, տուրի, եղջերուի պատկերները: Մարդիկ մեծ մասամբ պատկերված են մահակով, նետ ու աղեղով, տեգերով, նիզակով ու վահանով: Երբեմն էլ այստեղ ու այնտեղ երևում է մարդու հնարամիտ, խորամանկ մտքի արդյունքը՝ թակարդը, օղապարանը: Իսկ

սայլն ու արորը, ինչ խոսք, որսորդական-հովվական շրջանից նստակյաց հողամշակության անցնելու վկաներն են:

Կան ժայռագրեր աստղագիտական բնույթի: Այդպիսիք հիմնականում գտնվել են Վարդենիսի և Գեղամա լեռներում: Սրանց վրա պատկերները փորագրված են մետաղով: Նշանակում է պատկանում են մետաղի դարաշրջանին: Պատկերված են օրինակ, Առյուծի, Կարիճի ու Աղեղնավորի համաստեղությունները: Ինչպես և Արեգակը, Լուսինը և անզեն աչքով տեսանելի հինգ մոլորակները: Բավականին հաջող է պատկերված մանգաղաձև լուսինը: Գտնված են նաև լուսնային ամսին վերաբերող ժայռապատկերներ: Օրերի քանակն այնտեղ ճիշտ և ճիշտ 29-ն է: Կասկած չի հարուցում նաև տարվա 12 ամիսը ներկայացնող ժայռապատկերը:

Հետաքրքիր է նաև Երկիր մոլորակի հիերոգլիֆային պատկերումը. դա մի կլոր շրջան է՝ վրան խաչ: Շրջանի չորս ծագերում, ոտքերով շրջանին հենված մարդկային պատկերներ են:

Ուրեմն ի՞նչ. նշանակում է արդեն հազարավոր տարիներ առաջ մարդկանց հայտնի է եղել, որ երկիրը կլոր է: Եվ պատահական չէ, որ մեր մեծ հայրենակից Շիրակացին, նույնպես, առանց երկմտելու, Երկիրն ընդունել է որպես գնդաձև մարմին:

Աստղագիտականից բացի կան և նախնադարյան մարդու թվաբանական պատկերացումները արտահայտող ժայռապատկերներ: Ուղտասարում գտնված ժայռապատկերները, օրինակ, հենց այդպիսիք են: Մեկ սյուժեի մեջ պատկերված է մինչև հինգ թվանշանը: Ըստ որում՝ հինգը գծված է բռունցքի ձևով: Այդ զարմանալի չէ, քանի որ գիտությանը հայտնի են նախնադարի կենցաղով ապրող ցեղեր, որոնք հաշվում են մինչև հինգը, որից այն կողմ, մյուս թվերն արտահայտվում են «շատ» բառով: Այս ժայռապատկերները հավանաբար նախորդել են աստղագիտական բնույթի ժայռապատկերներին:

Պատանի բարեկամներ, եթե ձեզ էլ տուրիստական արշավների, էքսկուրսիաների ժամանակ հանդիպեն նման փորագրություններ, որ արված են բնակավայրերից հեռու՝ ժայռերի կամ քարանձավների պատերին, աշխատեք չփչացնել, ձեռք չտալ և շուրջը ոչինչ չգծմծել, այլ հայտնեք այդ մասին հնագետներին:



Աղվեսը, էշն ու կկուն կաչաղակին առյուծի դատին ներկայացրին:

Առյուծը մռնչաց, ակնոցը դրեց ու հարցրեց.

— Ինչու՞մ եք մեղադրում կաչաղակին:

Աղվեսն ասաց.

— Կաչաղակը տարածել է, որ իբրև թե ես պոչ չունեմ, ես էլ մտածեցի՝ պոչս տնկած ման գամ, որ հեռվից էլ երևա, չասեն պոչ չունեմ ու վրաս չծիծաղեն: Սովորություն դարձավ պոչս տնկած ման գալը ու մինչև օրս էլ ման եմ գալիս այդպես: Որսորդներն հեռվից-հեռու տեսնում են ինձ, պրծում չունեմ նրանցից, և մեղավորը կաչաղակն է:

Աղվեսը առյուծի առջև, սեղանի վրա, դրեց իր պոչը, որ ամբողջովին խանձված ու խոցոտված էր: Առյուծն ակնոցն ուղղեց քթին, ուշադիր նայեց, հառաչեց և ասաց.

— Ի՜նչ փարթամ պոչ ունեիր: Աղվեսի պոչի նման փարթամ պոչ ոչ մի գազան չուներ:

Առյուծը դարձավ, հարցրեց կաչաղակին.

— Ինչու՞ ես ստել:

— Ես ի՞նչ իմանայի, որ նա պոչ ունի, այն էլ այդպիսի փարթամ պոչ, սխալվել եմ, ներեցեք ինձ,— պատասխանեց կաչաղակը:

— Ինչ որ հաստատ չգիտես ու ասում ես, բամբասանք է նշանակում,— ասաց առյուծը:

Ավանակն էլ գանգատվեց առյուծին, ասաց.

— Կաչաղակը ինձ էլ է բամբասել, ասել է, թե ես ձայն չունեմ: Ես էլ մտածեցի՝ շուտ-շուտ ու բարձր զռամ, թող բոլորը լսեն ու իմանան, թե ինչ բարձր ու գեղեցիկ ձայնի տեր եմ: Ես մի գլուխ զռում եմ, իսկ տերս բարկանում է ու մի գլուխ ինձ մահակահարում: Է՜հ, ո՞վ իմ զռոցին կդիմանա, հարգելի դատավոր, ինքներդ դատեցեք:

Առյուծն ակնոցն ուղղեց, նայեց էշի կողերին ու ասաց կաչաղակին.

— Էշը երբ գյուղում զռում է, այստեղ խլանում են իմ ականջները, ինչո՞ւ ես դու զրպարտել:

— Ինձ ասացին, թե էշը ձայն չունի, սխալվել եմ, ներեցեք ինձ,— պատասխանեց կաչաղակը:

— Շատ էլ որ ասել են,— մռնչաց առյուծը,— եթե ինքդ չես լսել, լռի՛ր, բամբասկոտ:




Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ

— Իսկ քե՞զ ինչով է կաչաղակը նեղացրել,— դարձավ առյուծը կկուին:

Կկուն լաց եղավ.

— Նա հնարել է, թե ես ձու ածել չգիտեմ: Դրանից հետո, ամեն գարնան, ես իմ ձվերը դնում եմ ուրիշների բներում, որպեսզի թռչուններն իմանան, որ կաչաղակը սուտ է ասում: Ես խեղճուկրակս ահա այսպես դժբախտացել եմ, իմ երեխաները օտար բներում են մեծանում, ու ես վշտից վաղուց չեմ երգում, միայն լաց եմ լինում ու կանչում՝ կու-կու, կու-կու, կու-կու...

Առյուծը զայրացավ կաչաղակի վրա:

— Ախ դու, զրպարտիչ, քո բամբասանքներից ոչ մեկը կյանք չունի: Քաշեք սրա կարճ պոչը՝ երկարացրեք,— հրամայեց նա,— որ այսուհետև բոլոր գազաններն ու թռչունները նրա պոչը տեսնելուն պես հիշեն, որ նա բամբասկոտ է:

Բայց, միևնույն է, այս չօգնեց, թռչում է կաչաղակը անտառի վրայով ու մի գլուխ ճտպտում, բլբլում, բամբասում:



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

## ՀԱՂԱՐԾԻՆ

Հայաստան այցելող օտարերկրացիների համար շատ տարօրինակ է մեր կըտրուկ փոխվող կլիման ու լանդշաֆտը: Չոր, բուսականությունից զուրկ, հողմահարված լեռնային բնանկարը հանկարծ կարող է փոխվել ծաղկուն, անտառային լանդշաֆտի: Մի ժամում ինքնաշարժը շոգ Երևանից մեզ կարող է հասցնել բարձրադիր ու զով Սևան և այնուհետև հիասքանչ բնապատկերով Դիլիջան: Բազմադարյան պատմություն ունեցող, այժմ ամառանոցային այս փոքրիկ քաղաքը շրջապատված է թավուտ անտառներով, ուր առանց պարիսպների, ապահով կանգնած են Մաթոսավանքն ու Ջուխտակ վանքը, Գոշավանքն ու Հաղարծինը:

Միջնադարյան Հայաստանի նշանավոր հոգևոր ու մշակութային կենտրոններից է Հաղարծինը: Վանական համալիրի բարձրարժեք հուշարձաններն առանձին-առանձին և վանքն ամբողջությամբ, բնության և ճարտարապետության ներդաշնակ կապի հիանալի օրինակներ են: Տասներկուսից տասներեքերորդ դարերում կառուցված բազմաթիվ պաշտամունքային ու քաղաքացիական շինությունները վկայում են, թե հոգևոր ու հասարակական ինչ բուռն կյանքով է ապրել վանքը: Այստեղ աշխատել է միջնադարի ականավոր հոգևոր գործիչ Խաչատուր Տարոնացին: Նրա օրոք ծաղկել է Հաղարծնի վանքը, հայտնվել են նոր կառույցներ, բացվել է վանական դպրոց, որտեղ ավանդել են աշխարհիկ առարկաներ, խազերով ուսուցանել են երաժշտություն:

Համալիրի գլխավոր կառույցը 1281 թ. կյանքի կոչված ս. Աստվածածին եկեղեցին է, որն իր վեհ ու նրբագեղ հորինվածքով իշխում է մնացած բոլոր շինություն-

ների վրա: Եկեղեցին մի քանի անգամ վերանորոգվել է և մեզ է հասել բավական լավ վիճակում: Նուրբ ու հանդիսավոր է եկեղեցու հարավային մուտքը: Եթե նույնիսկ մի պահ մոռանանք, թե ինչ լանդշաֆտում է գտնվում համալիրը, միևնույնն է, բուսական այս նուրբ զարդանախշերին նայելով, կարող ենք ասել, որ վանքը շրջապատված է անտառներով: Եկեղեցու արևելյան ճակատի կամարաձև զույգ բացվածքներից վեր մի հետաքրքիր պատկերաքանդակ կա: Այնտեղ ներկայացված են եկեղեցու մոդելը ցուցադրող երկու տղամարդ: Մոդելից պարզվում է, որ գմբեթն առաջ եղել է հովհարաձև: Հետագայում, նորոգումների ժամանակ, նրա ձևը պարզվել, դարձել է բրգաձև:

Գլխավոր եկեղեցուց քիչ հեռու, նրա արևմտյան կողմում 1248 թ. Մինաս վարպետի կառուցած սեղանատունն է: Այս առաջնակարգ ու հազվագյուտ կոթողը մեր աշխարհիկ ճարտարապետության ամենաթանկ նմուշներից է: Ուղղանկյուն հատակագծով, ընդարձակ այս դահլիճը զույգ սյուներով բաժանված է երկու քառակուսիների: Սեղանատունը լուսավորվում է այդ երկու քառակուսիների գագաթների երդիկներից: Միաբանությունը ճաշի ժամանակ նստել է քարե սրբատաշ նստարանների վրա:

Հետաքրքիր է, որ սեղանատան տեսքը դրսից այնքան էլ տպավորիչ չէ. սրբատաշ ծակոտկեն կրաքարից պարզ, հարթ պատեր, առանց որևէ դեկորի և միայն մուտքն է, որ շեշտված է զուսպ ու հանդիսավոր: Բոլորովին այլ է սեղանատան ինտերյերը: Թեպետև այստեղ էլ բացակայում է դեկորը, այնուամենայնիվ, կառուցողական հետաքրքիր հնարքների շնորհիվ ներքին տեսքը անհամեմատ ավելի տպավորիչ է:

Վանքի կազմի մեջ են մտնում նաև ս. Գրիգոր եկեղեցին, գավիթը, Կաթողիկե եկեղեցին, ս. Ստեփանոս եկեղեցին, Թագավորական տապանատունը, մի քանի մատուռներ, արձանագիր խաչքարեր (մահարձաններ):

Հաղարծնի վանքը երբեք մռայլ չի լինում, նույնիսկ ամենամռայլ եղանակին, հակառակ այն շինությունների, որոնք նույնիսկ ամենապայծառ եղանակին անգամ, պայծառ չեն լինում:

ՆՈՒՆՈՒՓԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ
ճարտարապետ

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




Հայոց տոմարի 10-րդ ամիսն է, տևել է մայիսի 8-ից հուլիսի 6-ը:

Անանիա Շիրակացու, Գրիգոր Տաթևացու և միջնադարի մի քանի այլ մտածողների կարծիքով մարերի ամսանունը Հայկ նահապետի դուստրերից մեկի անունից է ծագել: Վանական Վարդապետը (1181—1257) այս ամսանունը բխեցնում է մայրի ծառի անունից, որովհետև մայրի ծառը հենց մայիսին էր տերևակալում:

Արդի տոմարագետների մեծ մասը այս ստուգաբանությունը ճիշտ է համարում:

ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

# ՄԻ ՏԱՐՈՎ ԷԼ ՄԵԾԱՑԱՐ ԴՈՒ...

Քո ծննդյան օրն է այսօր,
Մհեր, դարձար հինգ տարեկան,
Քո ծննդին ծա-փե՜ր, ծա-փե՜ր,
Ծա-փե՛ր, հա-զար ու հինգ ան-գամ:

Քո ծննդյան այս լավ օրին
Քեզ հետ մեկտեղ ե՛նք ցանկանանք,
Խաղաղություն ողջ աշխարհին
Եվ քեզ ուրախ ու երկար կյանք:

Լավ ընկերներ քեզ ցանկանանք
Ու բազմազան խաղալիքներ,
Ջրաներկեր, սիրուն գնդակ
Ու հրաշքով լեցուն գրքեր:

Մի տարով էլ մեծացար դու,
Եվ ինձնից ու մայրիկից զատ,
Երջանկություն է քեզ մաղթում
Հայրենիքը մեր հարազատ:

Քո ծննդյան օրն է այսօր,
Մհեր, դարձար հինգ տարեկան,
Քո ծննդին՝ ծա-փե՜ր, ծա-փե՜ր,
Ծա-փե՛ր, հա-զար ու հինգ ան-գամ:

# ՈՍԿԵ ՑԱՆՔ

Իմ՝ ոսկուց թանկ
Ցորենհատիկ,
Ես քեզ ցանեմ
Մատիկ-մատիկ,
Հողում դարձիր
Բյուրապատիկ:

Թող երկինքը քեզ տա անձրև,
Երբ պետք լինի՝ պայծառ արև,
Քեզ պարգևի թեթև քամի,
Անուշ երգեր կաքավների,
Գիշերները՝ խոնարհ ու հեզ
Թոն ու ամպով պարուրի քեզ:
Գերանդուն տա ձեռքեր պողպատ,
Ոսկե եզներ՝ սայլին արծաթ,
Մեծ կալերին՝ հսկա կամներ,
Ջրաղացին՝ ծանր քարեր
Ու շատ տաշտեր՝ քո խմորին,
Ծիր հացթուխներ՝ քո տաք թոնրին,
Իսկ սեղանիդ հոգնած-դադրած
Քառսուն մանկալ՝ ճակատը բաց:

Իմ՝ ոսկուց թանկ
Ցորենհատիկ,
Ես քեզ ցանեմ
Մատիկ-մատիկ,
Հողում դառնաս
Բյուրապատիկ:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15,
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38,

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.






● Եթե թռչունները զույգ-զույգ են կանգնում ծառերի վրա, ապա մեկ ծառ է ավելանում, իսկ եթե մեկ-մեկ են կանգնում, մեկ թռչուն է ավելանում։ Քանի՞ ծառ է և քանի՞ թռչուն։

● Փորձիր ութ հատ ութ իրար այնպես գումարել, որ գումարը ստացվի հազար։

## «ՊԻՈՆԵՐ» № 7-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

Ոսպնյակաձև սառցակտորը բարի ծառայություն մատուցեց Ժյուլ Վեռնի «Կապիտան Գատերասի ճանապարհորդությունը» արկածային վեպի հերոսներին։ Դոկտոր Կլոբուբոնին հեց այդ եղանակով վառեց խարույկը, երբ ճամփորդները, կորցնելով կրակվառիչը, մնացել էին առանց կրակի, սարսափելի՝ 48° սառնամանիքում... Սակայն այս ամենը ոչ այնքան ֆանտաստիկ, որքան իրական է։ Այս մեթոդով, առաջին անգամ բավական մեծ ոսպնյակաձև սառցակտորով Անգլիայում կրակ ստանում էին դեռևս... 1768 թվականին։ Հետագայում ևս մեծ հաջողությամբ են կիրառել սառույցից կրակ ստանալու մեթոդը։ Այո, փոխարինելով երկուռուցիկ ոսպնյակին, սառույցը կարող է կրակ հայթայթելու միջոց ծառայել, եթե այն բավականաչափ թափանցիկ է։ Փորձը, ի դեպ, հաջողությամբ է պսակվում առանձնապես սառնամանիքային պարզկա օրերին, բաց երկնքի տակ... Սառույցը, որի բեկման գործակիցը մի քիչ փոքր է, քան ջրինը, բեկում է արևի ճառագայթները, սակայն դրանից ինքը չի տաքանում և չի հալչում։

*Հանձնված է տպագրության 22.06.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 17.10.1984 թ.։ ՎՖ 11963։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 63652։ Պատ. 1504։ Գինը՝ 15 կ.։*
*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 22.06. 1984 г. Подписано к печати 17.10. 1984 г. Формат 70×100 1/16. ВФ 11963. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать, 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 69652. Заказ 1504. Цена 15 коп.
Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.

